Պրոլետարներ բոլոր երկրների
միացե՛ք

ՀԿ(բ)Կ ԿԵՆՏՐՈՆ. ԿՈՄԻՏ. ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ
ԵՎ ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

# № 1

ՀԱՅԿՈՒՍՀՐԱՏ ● 1936 ● ԵՐԵՎԱՆ

Պրոլետարներ բոլոր յերկրների, միացե՛ք

ՀԿ (բ) Կ ԿԵՆՏԿՈՄԻ ԿՈՒՍ. ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ՅԵՎ ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

## № 1

12 000




ՀԱՅԿՈՒՍՀՐԱՏ ● ՅԵՐԵՎԱՆ ● 1936

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



Թարգմ. Հ. Թուրշյան, խմբ. Դինո Շաղզամյան,
Տեխն. խմբ. Ս. Խաչատրյան, Սրբագրիչ Լ. Աբովյան

Գլավլիտի լիազոր № 1094—Ա, Հրատ. № 898,
Պատվեր 294, Տիրաժ 3000, Ինդեքս II—84 PK
Հանձնվել է արտադրության 14/X 1936 թ.
Ստորագրվել է տպագրության 21/X 1936 թ.

Հայկուսհրատի տպարան, Երևան,
Ալլահվերդյան № 27

**Ի. ՍՈՆՈՎ**

# ԺԱՄԱՆԱԿԱԿԻՑ ԻՍՊԱՆԻԱՆ

(Սոցիալ-տնտեսական ակնարկ)

## ԵՐԿԻՐՆ ՈՒ ԱԶԳԱԲՆԱԿՈՒԹՅՈՒՆԸ

*Իսպանիան գրավում է Եվրոպայի ամենահարավ-արևմտյան անկյունը։ Նրա տերիտորիան ընդգրկում է համարյա ամբողջ Պիրենեյան թերակղզին։ Թերակղզու միայն փոքրիկ մասն է պատկանում Փորթուգալիային, որը գտնվում է Իսպանիայի արևմտյան կողմում։ Իսպանիան հյուսիսից սահմանակից է Ֆրանսիային, որից նա բաժանված է թեև համեմատաբար ոչ բարձր, բայց դժվարանցանելի Պիրենեյան լեռներով։ Հյուսիս-արևմտյան կողմից Իսպանիան ողողվում է Ատլանտյան օվկիանոսով, իսկ*

արևելքից—Միջերկրական ծովով: Իսպանիայի ամենահարավային վերջավորությունը համարյա չփվում է Աֆրիկայի ամենահյուսիս-արևմտյան վերջավորության հետ: Այդ տեղում Իսպանիային աֆրիկյան ափից բաժանում է միայն Ջիբրալթարի նեղ նեղուցը, որը Միջերկրական ծովը միացնում է Ատլանտյան օվկիանոսի հետ և թե ռազմական, և թե՛ տնտեսական տեսակետից խիստ կարևոր դեր է Արևմտյան Յեվրոպայից դեպի արևելյան յեվրոպական ծովերը և հեռավոր ու մերձավոր արևելյան յերկիրները տանող ճանապարհի վրա: Սակայն Պիրենեյան թերակղզու այդ հարավային վերջավորությունը, որտեղ ծովախորշի մեջ, բարձր ապառաժուտ լեռներով շըրջապատված, թաղնվել է Ջիբրալթար քաղաքը, չի մտնում Իսպանիայի կազմի մեջ, այլ պատկանում է Անգլիային: Ջիբրալթարը Մեծ Բրիտանիայի ամենակարևոր ռազմածովային բազաներից մեկն է:

Իր տերիտորիայի տարածությամբ



(505,000 քառ. կիլոմետր) Իսպանիան մի քիչ է հետ մնում Ֆրանսիայից, սակայն նրա բնակչությունը (24,600,000) համարյա յերկու անգամ պակաս է Ֆրանսիայի բնակչությունից:

Մակերևույթի կազմության տեսակետից Իսպանիան ավելի շատ հիշեցնում է Աֆրիկային, քան Յեվրոպային: Դա բարձր լեռնաշխարհ է, որը կտրտված է տարբեր ուղղություններով ձգված լեռնաշղթաներով, որոնք ծովափերի մոտ կտրտվում են արգավանդ նեղ հովիտներով: Իսպանական գետերն Աֆրիկայի գետերի մեծ մասի նման բազմաթիվ խարակներ և ջրվեժներ ունեն և նավագնացության համար նվազ բարենըպաստ են:

Իսպանիայի կլիման նույնպես մեծ նմանություն ունի Հյուսիսային Աֆրիկայի կլիմայի հետ: Տեղումներով հարուստ է միայն յերկրի հյուսիսային մասը: Իսպանական տերիտորիայի մեծ մասը (առանձնապես կենտրոնն ու հարավ-արևելքը) խոնա-

վուԹյան տեսակետից աղքատ է: Խիստ շոգը և ջերմաստիճանի սուր տատանումներն է՛լ ավելի յեն ուժեղացնում տեղումների պակասուԹյան անբարենպաստ ազդեցուԹյունը գյուղատնտեսուԹյան վրա: Առանց արհեստական վոռոգման, Իսպանիայի մեծ մասում հողագործուԹյունը դատապարտված է վողորմելի վիճակի:

Վարչական տեսակետից Իսպանիան բաժանվում է 50 նահանգների (պրովինցիա): Պահպանվել է նմանապես յերկրի հին բաժանումը մարզերի, վորոնցից յուրաքանչյուրն ընդգրկում է մի քանի նահանգ: Բնական պայմանները, դարերի պատմական զարգացումը և յերկրի կիսաֆեոդալական հետամնացուԹյունը պայմանավորել են առանձին մարզերի, իհարկե, հարաբերական մեկուսացումը, նրանց փոխադարձ կապի ԹուլուԹյունը: Կապն առանձնապես Թույլ է հարավային Իսպանիայի և յերկրի հյուսիս-արևմտյան մասերի միջև:

Անհրաժեշտ է նշել նաև, վոր ազգաբնա-



կուԹյան ազգային կազմն այստեղ շատ բազմազան է: Յերկրի հյուսիսը և հյուսիս-արևմուտքը մեծ մասամբ բնակեցված են ազգային փոքրամասնուԹյունների ներկայացուցիչներով,—գալիսիացիներով, բասկերով, կատալոնցիներով: Գալիսիացիները մոտիկ են փորԹուգալացիներին, իսկ յերկրի նրանց բնակեցրած մասը (Գալիսիան) վոնց վոր ՓորԹուգալիայի հյուսիսային շարունակուԹյունը լինի: Նրանց Թիվը հասնում է մոտավորապես 2,200.000-ի: Բասկերը իբերացիների, նախնադարյան այս ցեղի, մնացորդներն են, վորը մի ժամանակ բնակվում եր Թերակղզում: Իսպանիայում մնացել են նրանցից ընդամենը 800,000 հոգի, իսկ դրանց մի մասն ապրում է Ֆրանսիայի սահմաններում: Կատալոնցիների Թիվը հասնում է մինչև 4,400.000-ի, սակայն նրանց մի մասն ապրում է Իսպանիայի սահմաններից դուրս (Բալեարյան կղզիներում, Ֆրանսիայում և վերջինիս աֆրիկյան գաղուԹներում):

Խոշոր քաղաքներ Իսպանիայում քիչ կան:

Հարյուր հազարից ավելի բնակչություն ունեցող քաղաքների թիվը հասնում է միայն տասի: Դրանցից ամենակարևորներն են՝ Մադրիդը, Իսպանիայի մայրաքաղաքը, վորն ունի մոտավորապես մեկ միլիոն բնակչություն. Բարսելոնը—Իսպանիայի ամենախոշոր քաղաքը—թեթև և մշակող արդյունաբերության կարևորագույն և պրոլետարական խոշորագույն կենտրոն է (իսպանական ամբողջ արդյունաբերական պրոլետարիատի 25 տոկոսը), վորն ունի 1·200·000 բնակչություն. Սարագոսան—երկաթուղային կարևոր հանգույց է, մեծ կայազոր ունի և ռազմական խոշոր նշանակություն. Սևիլիան Անդալուզիայի գլխավոր քաղաքն է, հարավի խոշորագույն քաղաքը: Նշենք նմանապես համեմատաբար վոչ մեծ Ովիեդո քաղաքը, իսպանական Դոնբասի—Աստուրիայի—այդ գլխավոր քաղաքը, և Բիլբաոն իսպանական մետաղագործության, մեքենաշինության և նավաշինության կարևորագույն կենտրոնը:



Պիրենեյան թերակղզուց դուրս Իսպանիան ունի՝ Կանարյան կղզիները (Ատլանտյան ովկիանոսում, Աֆրիկայի արևմտյան ափի դիմաց, 7,300 քառ. կիլոմետր տարածությամբ և 520 հազար բնակչով), Բալեարյան կղզիները (5 հազար քառ. կիլոմետր տարածությամբ և 345 հազար բնակչով) Միջերկրական ծովում, վորոնք ստրատեգիական խոշոր նշանակություն ունեն (գլխավոր կղզին կոչվում է Մայորկա, վորի վրա գտնվում է Պալմա քաղաքը), և մի շարք գաղութներ,—Իսպանական Մարոկկոն, Ռիո-Դե-Որոն (Սահարայի արևմտյան մասում, 285 հազար քառ. կիլոմետր տարածությամբ և 100 հազար բնակչով) և Իսպանական Գվինեան (Աֆրիկայի արևմտյան ափին):

Տնտեսական և քաղաքական առավել կամ պակաս նշանակություն ունի միայն Իսպանական Մարոկկոն, վորն անմիջականորեն կպած է Ջիբրալթարի նեղուցի հարավային ափին: Այդ գաղութի տերի-

տորիան 37,570 քառ. կիլոմետր է, բնակչությունը—800 հազար հոգի: Կարևորագույն քաղաքներն են Տետուանը, Մելիլիան և Սեուտան: Բոլորն էլ գտնվում են ծովի ափին:

## ԻՍՊԱՆԻԱՅԻ ՊԱՏՄԱԿԱՆ ԱՆՑՅԱԼԸ

Իսպանիան շատ հարուստ պատմություն ունի: Գտնվելով Եվրոպայի և Աֆրիկայի միացման վայրում, վորտեղ մի ժամանակ խաչաձևվում եյին համաշխարհային առևտրի կարևորագույն ճանապարհները, Իսպանիան միջին դարերի յերկրորդ կեսում Եվրոպայի ամենաառաջավոր և ամենաուժեղ պետությունն եր, տիրապետող դիրք եր գրավում համաշխարհային առևտրական փոխանակության և ծովագնացության մեջ:

Իսպանիայի պատմության այդ «վոսկեդարը» կապված է արաբների (մավրերի)—



միջին դարերում ամենաառաջավոր կուլտուրան ստեղծողների — կողմից Իսպանիան նվաճելու հետ: Արաբական կուլտուրայի որորանը Բաղդադը և Միջագետքի մյուս քաղաքներն եյին: Այդ կողմերից տարածվելով արաբներն աստիճանաբար նվաճեցին Աֆրիկայի ամբողջ հյուսիսային ծովափը և 711 թվականին նրանց առաջավոր ջոկատները Ջիբրալթարի նեղուցով անցան Իսպանիա: Համեմատաբար կարճ ժամանակամիջոցում նրանք գրավեցին ամբողջ յերկիրը՝ բացառությամբ հյուսիս-արևմտյան մասի, վորը պահպանեց իր ինքնուրույնությունը: Համարյա 8 դար Իսպանիան դարձավ արաբական կուլտուրայի նոր կենտրոն: Նրա կենտրոնը գլխավորապես Իսպանիայի հարավն եր—Անդալուզիան՝ Սեվիլիա, Կորդովա և Գրենադա քաղաքներով: Արաբների ժամանակ կառուցված արհեստական վոռոգման լայնածավալ սիստեմն առատ բերք եր ապահովում: Քաղաքներում առաջացավ արհեստավորական բարձր զարգացած ար-

դյունաբերություն, գլխավորապես մետաքսի, բրդի և բամբակի գործվածքների արտադրությունը: Հարավային Իտալիայի արաբական համալսարաններն այն ժամանակ լուսավորության միակ կենտրոններն էին Եվրոպայում: Այստեղ ուսումնասիրվում էին մաթեմատիկան, աստղաբանությունը և նույնիսկ բնական գիտությունները ու բժշկագիտությունը, որոնց ուսումնասիրությունը մնացած Եվրոպայում խստորեն արգելված էր կաթոլիկ եկեղեցու կարգադրությամբ:

Քաղաքային կուլտուրայի բարգավաճումը և արդյունաբերության ու առևտրական փոխանակության աճումն անդրծովյան գաղութներ ձեռք բերելու ուժեղ ձգտում առաջ բերին: Գաղութներ ձեռք բերելուն ձգտում էին նաև Հյուսիսային Իտալիայի տերերը: Գաղութների համար մղվող կռիվը տեղի տվեց աշխարհագրական մի շարք կարևորագույն հայտնագործությունների: 15-րդ դարի վերջերին, ծովագնաց Քրիս-



տափոր Կոլումբոսը Իսպանիայի կառավարության կազմակերպած էքսպեդիցիայի գլուխն անցած, հայտնագործեց Ամերիկան: Խաղաղ օվկիանոսը գտնելու պատիվը պատկանում է իսպանական ծովակալ Մագելանին: Մագելանի հրամանատարության տակ գտնված էսկադրան աշխարհում առաջինը շուրջերկրյա ճանապարհորդություն կատարեց:

Միջին դարերի երկրորդ կեսում Իտալիայի կուլտուրական ու տնտեսական ծաղկման մասին վկայում է այն փաստը, որ նրա բնակչությունն այն ժամանակ հասնում էր 30 միլիոնի, այսինքն զգալի չափով ավելի քան ներկայիս:

Սակայն քաղաքային կուլտուրայի բուռն զարգացումը կենտրոնացել էր առավելապես Հարավային Իտալիայում, որտեղ արդեն սոցիալ-տնտեսական հիմքեր էին դրվում սոցիալական ու քաղաքական նոր կարգի առաջացման և իշխանությունը նոր դասա-

կարգի—բուրժուականի—ձեռքն անցնելու համար։

Հյուսիսը, առանձնապես այն մասը, վորին չհասավ արաբական նվաճումը, քարանում էր միջնադարյան ֆեոդալիզմի խավարի մեջ։ Դարերի ընթացքում կռիվ էր տեղի ունենում հյուսիսի ֆեոդալական իշխանությունների և քաղաքային հարավի միջև, և ճիշտ այն թվին, յերբ Կոլումբոսը հասավ ամերիկյան ափին (1492 թ.), հյուսիսային ֆեոդալների գրոհից ընկավ Գրենադան—Իսպանիայի քաղաքային կուլտուրայի վերջին հենարանը։ Հարավի առևտուրն ու արհեստավորական արդյունաբերությունը համեմատաբար կարճ ժամանակամիջոցում ճզմվեցին հաղթանակող ֆեոդալիզմի յերկաթե կրունկի տակ։ Հարյուր հազարավոր արհեստավորներ, առևտրականներ, գիտնականներ, բժիշկներ վտարվեցին յերկրից կամ գազանաբար վոչնչացվեցին ինկվիզիցիայի խարույկների վրա՝ կրոնական հերետիկոսության դեմ պայքարելու պատրվակով։



Կաթոլիկ յեկեղեցին, աշխարհիկ ֆեոդալների հետ ձեռք ձեռքի տված, արեց ամենայն հնարավորը, վորպեսզի այն ժամանակ, յերբ մնացած ամբողջ Յեվրոպայում սկսվել էր ֆեոդալական կարգի քայքայումը, Իսպանիան հետ դարձնի դեպի միջնադարյան բարբարոսության ժամանակները։ Այդ պայմաններում նույնիսկ Իսպանիայի՝ Ամերիկայում հենց նոր ձեռք բերած գաղութների անհամար հարստությունները չկարողացան բեղմնավորել իսպանական տնտեսությունը։ Գաղութներից Իսպանիա ներհոսած վոսկին ու արծաթը չեյին գնում արտադրական նպատակների համար. աշխարհիկ ու հոգևոր ֆեոդալները վատնում եյին այդ արծաթն ու վոսկին, նրանք այդ թալանված միջոցները գլխավորապես ծախսում եյին Իսպանիայի սահմաններից դուրս կատարված գնումների վրա։ Բնորոշ է, վոր Իսպանիան նույնիսկ դադարեց սպառազինման առարկաներ արտադրելուց և սկսեց

դրանք գնել արտասահմանում, գլխավորապես Հոլանդիայում:

Դա Իսպանիայի քաղաքական հզորության ամենաբարձր ծաղկման շրջանն էր (16–րդ դարը): Իսպանիայի թագավորները «Հռոմեական սրբազան կայսրության» կայսրներ էին: Նրանք իշխում էին Կենտրոնական և Հարավային Ամերիկայի, Հոլանդիայի ու Ֆլանդրիայի վրա: Սակայն ֆեոդալական կարգի հաղթանակն Իսպանիայում կանխորոշեց թե բուն երկրի և թե նրա միջազգային քաղաքական հզորության աստիճանական անկումը: 18-րդ դարի կեսին Իսպանիայի բնակչությունը նվազում ու հասնում է 8 միլիոնի: Իսպանիան եվրոպական ամենից ավելի ուժեղ պետության իր դիրքը և իր ղեկավար դերը համաշխարհային առևտրի ու ծովագնացության մեջ արագությամբ զիջում է Հոլանդիային ու Անգլիային:

19–րդ դարի սկզբին, Հարավային և Կենտրոնական Ամերիկայում ազգային–ազա-





տագրական շարժման աճման հետևանքով Իսպանիան կորցնում է իր գաղութային տիրապետությունների մեծ մասը: 19–րդ դարի վերջին Միացյալ Նահանգների դեմ մղած անհաջող պատերազմն Իսպանիային զրկում է ամերիկյան գաղութների վերջին մնացորդներից, ինչպես նաև Արևելյան Ասիայի գաղութներից—Ֆիլիպյան կղզիներից: Ճիշտ է, դրանից անմիջապես հետո Իսպանիան ձեռք է բերում ներկայիս Իսպանական Մարոկկոն, սակայն այդ նվաճումը մյուս պետությունների (Անգլիայի, Ֆրանսիայի, Գերմանիայի) իմպերիալիստական մրցակցության կողմնակի արդյունքն էր միայն: Հենց այն բանի համար, որ այդ պայքարի ընթացքում անգլիական իմպերիալիզմը չէր կարող ապահովել իր համար Ջիբրալթարի նեղուցի հարավային ափերը և, բնականաբար, չէր ցանկանում, որ դրանք իր մրցակիցների ձեռքն ընկնեն, նա ոչնչից և հասավ այն բանին, որ ներկայիս Իսպա-

նակյան Մարոկկոյի տերիտորիան ավելի թույլ Իսպանիային:

Սակայն վերադառնանք Իսպանիայի ներքին զարգացմանը: Այդ զարգացման հիմքն ամբողջ 19-րդ և 20-րդ դարերում շարունակել է մնալ կապիտալիզմի զարգացումն արգելակող ֆեոդալական մնացուկների վճռական ուժը և դրանից բխող՝ բուրժուազիայի թուլությունը, պրոլետարիատի փոքրաքանակությունը և տնտեսական ու կուլտուրական ընդհանուր հետամնացությունը: Կապիտալիզմի անբավարար զարգացումը, պրոլետարիատի և բուրժուազիայի թուլությունը կանխորոշում էին բուրժուական հեղափոխության հաճախակի փորձերի անհաջողությունը, որ կատարվում էին 19-րդ դարի ընթացքում: Նրանք բոլորն էլ անտարակույս վերջանում էին ֆեոդալիզմի հաղթությամբ և ֆեոդալական կարգերի վերականգնմամբ:

Ճիշտ է, կապիտալիզմն, այնուամենայնիվ, զարգանում էր, և դա իր դրոշմը



դրեց յերկրի նաև քաղաքական զարգացման վրա: 1876 թվին սահմանադրություն մտցվեց, որը նախատեսում էր սահմանադրական միապետություն՝ պառլամենտով (կորտեսներ), որը բաղկացած էր յերկու պալատից (պատգամավորների կոնգրես և սենատ): Այդ սահմանադրությամբ ստորին պալատ (պատգամավորների կոնգրես) ընտրելու համար տղամարդիկ համարյա ընդհանուր ընտրական իրավունք ստացան և կառավարությունը պատասխանատու յեր կորտեսների առաջ: 1876 թվի սահմանադրությունը ձևականորեն ուժի մեջ մնաց մինչև 1931 թվի ապրիլյան հեղափոխությունը: Սակայն 1923 թվի ամառը, հետպատերազմյան սուր ճգնաժամի և մասսաների անդուսպ կերպով աճող հեղափոխական շարժման պայմաններում, Իսպանիայում ֆաշիստական հեղաշրջում է տեղի ունենում, որի ժամանակ ցրվում են կորտեսները և զինվորական դիկտատուրա յե

հաստատվում գեներալ Պրիմո դե Ռիվերայի գլխավորությամբ:

Պրիմո դե Ռիվերայի ռեժիմը տևեց 7 տարի: Նրան չհաջողվեց վերացնել քաղաքական ճգնաժամը, վորը խորանում էր իսպանական ֆեոդալիզմի աճող քայքայմամբ և փտումով: 1930 թվի հունվարին Պրիմո դե Ռիվերան հարկադրվեց հրաժարական տալ:

Նրան փոխարինող գեներալ Բերենգերի կառավարությունն ընդհանուր առմամբ և նույն «հաջողությամբ» շարունակեց նրա քաղաքականությունը: Հեղափոխական ճգնաժամը շարունակում էր աճել: 1930 թվի դեկտեմբերին ապստամբություններ են տեղի ունենում մի շարք կայազորներում և միաժամանակ ընդհանուր գործադուլ է սկսվում 35 քաղաքներում: Չնայած Բերենգերին հաջողվեց ճնշել ապստամբությունը, սակայն նա հարկադրված եղավ 1931 թվի փետրվարին հրաժարական տալ:

Ազնարայի նոր կառավարությունը հար-



կազմված եղավ, քաղաքական լարված մթնոլորտը թուլացնելու համար, համաձայնվել սահմանադրական իրավունքների մասնակի վերականգնմանը, ամենից առաջ մունիցիպալիտետների (տեղական ինքնավարության օրգանների) վերընտրություններին: Ապրիլի 12-ին տեղի ունեցած ընտրությունները վերջացան (քաղաքներում) միապետության և ֆաշիստական ռեժիմի կողմնակիցների խոշոր պարտությամբ: Տիրապետող դասակարգերը հարկադրված էին հաշվի առնել ուժերի նոր փոխհարաբերությունը: Մասսաները վոտքի էին կանգնում վոչ միայն քաղաքներում, այլև գյուղերում: Թագավորն ստիպված եղավ փախչել արտասահման, և 1931 թվի ապրիլի 14-ին Իսպանիան դարձավ հանրապետություն:

## ԻՍՊԱՆԻԱՅԻ ԵԿՈՆՈՄԻԿԱՆ

Նախքան Իսպանիայի հետագա զարգացման լուսաբանմանն անցնելը կանգ առնենք յերկրի տնտեսակարգի բնութագրման վրա:

ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍՈՒԹՅՈՒՆԸ

Իսպանիան հիմնականում ագրարային երկիր է: Նրա ինքնագործ բնակչության 56 տոկոսն զբաղված է գյուղատնտեսությամբ: Նրա արտահանության (1935 թվին 451 միլիոն ոսկի պեզետ) 63 տոկոսը (284 միլիոն ոսկի պեզետ) պարենամթերքներ են, 19 տոկոսը հումք է, և միայն 18 տոկոսը պատրաստի իրեր:

Իսպանիայում ցանում են ցորեն, եգիպտացորեն, տարեկան, վարսակ, բրինձ, աճեցվում են բազմազան բանջարեղեններ: Երկրի հարավային և հարավ-արևելյան մասը ծածկված է ձիթենու, կիտրոնի և նարնջի արժեքավոր պուրակներով: Այստեղ աճում է նաև խցանի կաղնի: Հարավում և արևելքում գյուղատնտեսության կարևորագույն ճյուղ է հանդիսանում խաղողաբուծությունը և գինեգործությունը: Կանարյան կղզիներում աճում են բանաններ: Իսպանիայի հյուսիսում և հյուսիսարևմուտքում լայն զարգացել է անասնա-



պահությունը: Ցեղջեկավոր անասունները համարյա բացառապես այստեղ են աճում: Ի միջի այլոց, մինչև վերջին ժամանակներս հարավում էլ բուծվում էին անգլիական հռչակավոր ցուլերը—հատկապես ցլամարտի համար:

Պետք է նշել իսպանական գյուղատնտեսության ընդհանուր հետամնացությունը: Իսպանիայում մշակվում է հողի տարածության ընդամենը 40 տոկոսը, ըստ որում այդ 40 տոկոսի մի քառորդ մասը միշտ հարոս է թողնվում: Իսպանիայում բերքն զգալիորեն ցած է Արևմտյան Եվրոպայի միջին բերքից: Արհեստական ոռոգումը կիրառվում է արհեստական ոռոգման կարիք ու հնարավորություն ունեցող հողերի կեսում միայն: Ամերիկացի Կուպերը, որը երկիրն այցելել է 1928 թվին, այսպես է նկարագրում Իսպանիայի երկրագործական տեխնիկան.—

«Եթե չհաշվենք մի քանի վայրերում գործադրվող շոգեկալսիչները, երկրի

մնացած ամբողջ մասում հացահատիկը կալսում են հին ժամանակների նման, կալատեղում, վորտեղ շրջան գործող յեզները կամ ջորիները վոտներով տրորում են հացահատիկը: Իսպանական գյուղացին դեռևս հողը հերկում է վոչ թե շոգեգութանով, այլ փայտե գութանով ու յեզներով... հունձը սովորաբար մանգաղով է կատարվում: Արտերում յես միայն մի քանի բերքահավաք մեքենաներ տեսա, վորոնք հիշեցնում եյին Ամերիկայում 19-րդ դարի 60-ական թվականներին գործածվող մեքենաները»:

Գյուղատնտեսության անկման համար բնորոշ է նաև անասունների քանակի կրճատումը վերջին տասնամյակների ընթացքում:

Իսպանական յերկրագործության և անասնապահության հետամնացությունը գյուղում իշխող ֆեոդալական հարաբերությունների ուղղակի արդյունքն է:

26 հազար խոշոր հողատերեր (գյուղա-



տնտեսական բնակչության 2%-ը) տիրում են հողային ամբողջ տարածության 67 տոկոսին: Մեկ միլիոն հողատերեր (գյուղատնտեսական բնակչության մոտ 40%-ը) յուրաքանչյուրն առանձին վերցրած ունեն վոչ ավելի քան 1 հեկտար հողամաս, իսկ բոլորը միասին տիրում են հողային ամբողջ տարածության 1,1%-ին: Միջանկյալ խմբերին պատկանում է հողային տարածության մոտ 32%-ը: Այս տվյալները վերաբերում են 27 նահանգների: Ամբողջ յերկրին վերաբերող վիճակագրական տվյալներ չկան, սակայն բոլոր հիմքերը կան յենթադրելու, վոր վերև բերված թվերը բնորոշ են ամբողջ Իսպանիայի համար: Կարելի յե հաշվել, վոր Իսպանիայում մոտ 200 հազար կալվածատերեր (այդ թվում նաև վանքեր, վորոնք հանդիսանում են խոշոր հողատերեր) և գյուղացի-կուլակներ կան: Զքավոր և միջակ գյուղացիների թիվը մոտ 3 միլիոն է, բացի դրանից, կան մոտ 2 միլիոն կամ բոլորովին հողազուրկ,

կամ թե իրենց վողորմելի հողամասերը լքող և մյուս նահանգներում վաստակ վորոնող գյուղատնտեսական բանվորներ։

Այսպիսով, մի կողմից խոշոր կալվածքները, իսկ մյուս կողմից մանր, գաճաճային տնտեսությունները և բոլորովին հողազուրկ գյուղացիների ու բատրակների վիթխարի զանգվածներն Իսպանիայում վճռաբար գերակշռում են միջակ տնտեսություններին։ Հողատեր–ֆեոդալին անմիջականորեն հակադրվում է հողազուրկ և սակավահող չքավորությունը, վորը հանդիսանում է գյուղի բնակչության հիմնական զանգվածը։ Մի շարք մոմենտներում պատկերը հիշեցնում է միջնադարյան հարաբերությունները, յերբ ֆեոդալին նույնպես հակադըրվում էր նրանից լիովին կախված ճորտ գյուղացիության համարյա միատարր զանգվածը։ Անհրաժեշտ է նշել, վոր կալվածատերերից կախումն ունենալու տեսակետից նույնիսկ սեփական հող ունեցող գյուղացիները, նույնիսկ գյուղի վերևի բարակ շեր–



տը հեռու չի գնացել իր ճորտ նախնիներից։ Իսպանական գյուղում մինչև օրս իշխում են վոչ միայն կապալային վարձակալումը, այլև վարձակալման կիսամիջնադարյան ձևերը (վորոնք հիմնականում հանգում են վարձակալողի լրակատար իրավազրկությանը) և կիսաֆեոդալական նատուրալ պարհակները՝ կալվածատիրոջ օգտին, պարհակներ, վորոնք սրբագործված են սովորությամբ և կաթոլիկ յեկեղեցու օրհնությամբ։

Աղքատությունն իսպանական գյուղում նույնպես բառի բուն իմաստով միջնադարյան է։ Անդալուզիայում բատրակները դեռ վերջերս ստանում էյին օրական մեկ–մեկուկես պեզետ (պեզետը 69 կոպեկ է), վորը չի բավականացնում նույնիսկ նրա՝ բանվորի սնվելուն։ Ըստ վորում պետք է նկատի ունենալ, վոր բատրակն ամենալավագույն դեպքում տարեկան միայն 200 օր աշխատանք ունի։ Գյուղատնտեսական բանվորները սովորաբար ապրում են վոչ թե տներում, այլ

գոմաղբով տաքացվող՝ կավից պատրաստած խրճիթներում, առանց պատուհանների, որոնց կտուրին միայն ծուխ դուրս գալու անցք կա: Սեփական կամ վարձակալվող հողեր մշակող գյուղացիների դրությունը մի քիչ ավելի լավ է, սակայն նկարագրված պայմանները, այնուամենայնիվ, բավարար պատկերացում են տալիս ինչպես, ոչ միայն Անդալուզիայի, այլև գյուղացիական հիմնական մասսաների դրության մասին:

Ֆեոդալիզմի մնացուկների ուժը գյուղական բնակչության հիմնական մասսաներին սովամահության դատապարտելով, մյուս կողմից անշարժության է դատապարտում երկրի ամբողջ գյուղատնտեսական էկոնոմիկան: Հողային հսկայական տարածությունները չեն մշակվում, որովհետև կալվածատերերը չեն ցանկանում կապիտալ ներդրել կամ թե անհրաժեշտ կապիտալը չունեն վոռոգման սիստեմ կառուցելու համար, մեքենայացված խոշոր տնտեսություններ կազմակերպելու համար: Շատ



դեպքերում նրանք գիտակցաբար արգելակում են մշակվող հողային տարածության աճումը, վախենալով, որ վարձակալների ընդարձակումը կարող է նվազեցնել վարձակալման վճարը, իսկ գյուղատնտեսական մթերքների ավելացող առաջարկությունը շուկայում կարող է գցել հացի գները: Հողային տարածությունների ընդարձակումից և գյուղատնտեսության մեջ նոր տեխնիկա մուծելուց գիտակցաբար հրաժարվելու քաղաքականությունը հանդեցնում է այն բանին, որ Իսպանիայում անընդհատ բարձրանա գյուղատնտեսական արտադրության ինքնարժեքը: Յեվ վորքան ավելի բարձր է ինքնարժեքը, կալվածատերերն այնքան ավելի յեն շահագրգռված հացի բարձր գներով, այնքան ավելի ուժեղ է նրանց վախը վարձակալների ընդարձակվելու և գյուղատնտեսական տեխնիկայի առաջադիմության հնարավոր հետևանքների համար: Գյուղում փեոդալական հարաբերությունների պահպանումը, այսպիսով, Իսպանիայի

գյուղական տնտեսությանը ճշում է կախարդական շրջանի մեջ, որից երկիրը կարող է դուրս պոկվել միայն ագրարային հեղափոխության միջոցով:

## ԱՐԴՅՈՒՆԱԲԵՐՈՒԹՅՈՒՆԸ

*Գյուղի աղքատությունը և գյուղատնտեսության հետամնացությունը ծայրահեղորեն նեղացրել են ներքին շուկան, որը հանդիսանում է իսպանական արդյունաբերության հետամնացության հիմնական պատճառը:*

*Իսպանիայի արդյունաբերական զարգացմանը որոշ մղում տվեց համաշխարհային պատերազմը, երբ համաշխարհային ապրանքային սովը և ռազմական մատակարարումները նույնիսկ իսպանական արտադրության ցածրորակ արտադրանքներին լայն սպառում ապահովեցին երկրի սահմաններից դուրս:*

*Սակայն պատերազմից հետո արտասահմանյան մրցակիցներն առանց դժվարության*



*դուրս վանեցին իսպանական ապրանքները համաշխարհային շուկայից:*

*Իսպանական մշակող արդյունաբերությունն ընդարձակելով իր արտադրական ապարատը, ընկավ ձգձգվող, խրոնիկական ճգնաժամի ճիրանները և հետպատերազմյան բոլոր տարիներին նա երբեք չի աշխատել լրիվ բեռնվածությամբ:*

*Իսպանական մշակող արդյունաբերության հիմնական ճյուղը* տեքստիլ արտադրությունն է: *Իսպանիայում* 1.875.000 *տեքստիլ իլիկ կա* (*Ֆրանսիայի* 9,8 *միլիոն*, *Իտալիայի* 5,2 *միլիոն և Լեհաստանի* 1,5 *միլիոն ճախարակի դիմաց*): *Տեքստիլ արդյունաբերության* $^{9}/_{10}$*-ը կենտրոնացված է Կատալոնիայում* (*Հյուսիսային Իսպանիա*), *գլխավորապես Բարսելոնում:*

*Կատալոնիան նմանապես հանդիսանում է հետպատերազմյան տարիներին ուժեղ կերպով զարգացած* էլեկտրոարդյունաբերության *կենտրոնը: Այդ ճյուղի մեջ ամենից ավելի մեծ չափով են զարգացել ֆինանսա-*

կան կապիտալի բնորոշ առանձնահատկու-
թյունները (արդյունաբերական խոշոր միա-
վորումների միաձուլումը բանկերի հետ)։
Իտալական ելեկտրաարդյունաբերության
բաժնետիրական ամբողջ կապիտալի մի յեր-
րորդից մինչև կեսը պատկանում է ոտա-
րերկրյա կապիտալին, մասնավորապես
ԱՄՆ-ի և Գերմանիայի ելեկտրատեխնիկա-
կան հզոր տրեստներին։ Ելեկտրատեխնիկա-
կան արտադրության զարգացումն առաջ է
յեկել պատերազմի ժամանակ իտալական
արդյունաբերության մասնակի վերասար-
քավորմամբ։ Վիճակագրությունը ցույց է
տալիս, վոր 1915 թվից մինչև 1929 թիվը
իտալական արտադրության հիմնական
ճյուղերում ելեկտրական շարժիչների տո-
կոսը 38-ից աճել է մինչև 59-ի։ Ելեկտրո-
եներգիայի արտադրությունը 1913 թվի
62,5 միլիոն կիլովատից 1929 թվին հասել
է 2433 միլիոն կիլովատի։ Սակայն Իտա-
լիան այժմ էլ այդ բնագավառում խիստ
հետ է մնում վոչ միայն Ֆրանսիայից



(14.319 միլիոն կիլովատ 1929թ.), այլև
Լեհաստանից (3023 միլիոն կիլովատ)։ Ընդ
վորում վերջին տարիների ընթացքում
ելեկտրիֆիկացման պրոցեսն սկսել է թու-
լանալ, և իտալական ելեկտրատեխնիկա-
կան արդյունաբերությունը, ինչպես նաև
իտալական ելեկտրոկայանները, սկսում են
ապրել գերարտադրության գնալով ավելի
ու ավելի սուր դժվարություններ։

Մետաղամշակման արդյունաբերությունն
Իտալիայում թույլ է զարգացած։ Պող-
պատ ձուլելու գծով (1003 հազար տոնն
1929թ.) Իտալիան Յեվրոպայում ամենա-
վերջին տեղերից մեկն է բռնում, հետ մնա-
լով նույնիսկ Լեհաստանից (1377 հազար
տոնն)։ Իտալիայի խոշորագույն մետաղա-
գործական ձեռնարկությունը—Բիլլաոյում
(Հյուսիսային Իտալիա) գտնվող «Սասա
Ադնարը»—վորը միացնում է մետաղաձուլ-
ման գործարաններ, նավաշինական վեր-
ֆեր, յերկաթուղիներ, յերկաթի ու քարած-
խի հանքեր, սերտորեն կապված է ան-

գլխավոր կապիտալի հետ: Իսպանիայի մնացած մետաղաձուլման և մետաղամշակման ձեռնարկությունները նույնպես կապված են անգլիական ու ֆրանսիական կապիտալի հետ: Նրանց համար ել բնորոշ է արտադրության համակենտրոնացման բարձր աստիճանը և արտադրության այդ ամբողջ ճյուղի համակենտրոնացումը ($^4/_5$-ով) Բիլբաոյի շուրջը՝ Բիսկայան նահանգում:

Իսպանիայում ավելի լայն է զարգացած արդյունահանող արդյունաբերությունը, — քարածխի, յերկաթի հանքաքարի, կապարի, պղնձի և սնդիկի արդյունահանությունը: Արդյունահանող արդյունաբերությունը $^2/_3$-ով գտնվում է օտարերկրյա կապիտալի ձեռքին և նրա արտադրանքը հիմնականում արտահանվում է, չարդասավորելով իսպանական տնտեսությունը:

Քարածուխ արդյունահանվում է գլխավորապես Աստուրիայում: Արդյունահանությունը կազմում է տարեկան 6—7 միլիոն տոնն (նախապատերազմյան շրջանի 3—4



միլիոն տոննի դիմաց): Քարածխի արդյունաբերության մեջ շատ ուժեղ է անգլիական կապիտալը:

Յերկաթի հանքաքարը, վորի արդյունահանությունը կենտրոնացված է մի քանի տրեստների ձեռքին, արդյունահանվում է գլխավորապես Բիսկայայում և Իսպանական Մարոկկոյում: Բիսկայան հանքաքարի 80 տոկոսն արտահանվում է, ըստ վորում բացառապես Անգլիա: Իմիջիայլոց, վերջին ժամանակներս հանքաքարի արտահանությունը բուռն Իսպանիայից ընկնում է (դրան համապատասխան հանքաքարի արդյունաբերությունը Բիսկայայում իջել է մինչև տարեկան 2 միլիոն տոննի, նախապատերազմյանից 4 անգամ պակաս): Նրան ավելի ու ավելի նեղում է յերկաթի հանքաքարի արդյունահանությունն Իսպանական Մարոկկոյից:

Պղինձ արդյունահանվում է առավելապես Հարավում, Անդալուզիայում, Ռիո-Տինտո ռայոնում: 1934 թվին 11 հազար տոնն

պղինձ է ձուլված՝ 1929 թվի 28 հազարի դիմաց։ Պղնձահանքերը պատկանում են անգլիական ընկերությանը, որն, ըստ էության, ինքնակալ տեր է այդ ամբողջ ռայոնում։

Անդալուզիայում և սահմանակից նահանգներում արդյունահանվում է նաև կապար։ Նրա արդյունահանության 60 տոկոսով գտնվում է ֆրանսիական կապիտալի ձեռքին։ Իսպանական կապիտալն առավելապես մանր հանքեր ունի։

Իսպանիան համաշխարհային շուկայի խոշորագույն սնդիկ մատակարարողներից մեկն է։ Համաշխարհային արտադրության մի յերրորդը նա յե տալիս։

Ռազմարդյունաբերության ձեռնարկությունների մեջ կան պետական գործարաններ, կան և բաժնետիրական ընկերություններին պատկանող մասնավոր գործարաններ՝ հաճախ օտարերկրյա կապիտալի մասնակցությամբ։ Պետական են,—Տոլեդոյի և Օվիեդոյի զինագործարանները, Տրուբիի



(Աստուրիա) թնդանոթի և արկի գործարանը, Սևիլիայի թնդանոթի գործարանը, Տոլեդոյի և Սևիլիայի փամփուշտի գործարանները, Տոլեդոյի և Մուրսիայի վառոդի գործարանները։ Պետք է հիշատակել նաև Մադրիդի պետական ավիոգործարանը և Գետաֆեյի (Մադրիդի մոտ) ռազմա-քիմիական զինանոցը։ Մասնավոր ձեռքերում գտնվում են գլխավորապես ավիացիոն գործարանները,—«Ավիացիոն կոնստրուկցիաների ընկերության» ձեռնարկությունները Մադրիդում և Կադիքսում (1935 թվին այդ ձեռնարկություններում կառուցվել է մոտ 250 ռազմական ինքնաթիռ), «Իսպանո» ընկերության ավիոգործարանները Բարսելոնում (տարեկան 300 ինքնաթիռի արտադրողականությամբ), նույն ֆիրմայի՝ ավիոմոտորային գործարանը Գվադալախարում (Մադրիդից հյուսիս) և «Լորին» ֆիրմայի ավիոգործարանը Մադրիդի մոտերքում։

Անհրաժեշտ է նշել նաև ռազմական վեր-

ֆերը Կարթախենում (Հարավային Իսպանիա) և Ֆերոլ նավահանգստում (Հյուսիսում)։ Ֆերոլի վերֆը պետական է։

Խոսելով իսպանական արդյունաբերության ընդհանուր բնույթի մասին, անհրաժեշտ է ընդգծել ձեռնարկությունների մեծ մասի սարքավորման ցածր վորակը և հնացած բնույթը (օրինակ, տեքստիլ արդյունաբերությունը մեծ մասամբ արտասահմանում ձեռք է բերում բանեցված, այսինքն մյուս յերկրներում արդեն գործածությունից հանված մեքենաներ), մանր ձեռնարկությունների գերակշռությունը, ֆաբրիկների ու գործարանների կարողության վոչ լրիվ օգտագործումը և վորպես այդ բոլորի հետևանք՝ իսպանական արդյունաբերական արտադրանքի բարձր ինքնարժեքը։

## ՏՐԱՆՍՊՈՐՏԸ

Ֆեոդալիզմի ուժեղ մնացուկները և յերկրի տնտեսական զարգացման հետամնա-



ցությունը շատ ցայտուն կերպով անդրադարձել են իսպանական յերկաթուղային տրանսպորտի բացառիկ վողորմելի վիճակի վրա։ Իսպանական յերկաթուղային ցանցի ընդհանուր յերկարությունը 17 հազար կիլոմետր է։ Իսպանիայում յուրաքանչյուր 100 կիլոմետր տերիտորիային ընկնում է միայն 3,2 կիլոմետր յերկաթուղագիծ, յերբ Ֆրանսիայում ընկնում է 11,6 կիլոմետր, Գերմանիայում 12,5 կիլոմետր, Անգլիայում 14,2 կիլոմետր։ Յերկրի կարևորագույն կենտրոնները հաճախ յերկաթուղային ուղիղ կապ չունեն միմյանց հետ։ Գնացքները քիչ են։ Համարյա բոլոր ճանապարհներն էլ մի գծանի յեն։ Յերկաթուղիների սարքավորումը խիստ հնացած է և հիմնականում ձեռք է բերվում արտասահմանում։

Յերկաթուղիների այդ դրությունն գլխավորապես պայմանավորված է, առաջին, բնակչության ծայրահեղորեն թույլ շարժունակությամբ (ֆեոդալիզմի բնորոշ մնացուկ), յերկրորդ, նրանով, վոր յերկրի

տնտեսապես առավել զարգացած ռայոնները գտնվում են ծովափերին։ Ներքին նահանգների արտադրանքը հիմնականում սպառվում է տեղում։ Դրանից էլ առաջանում է բեռնաշրջանառության չնչին զարգացումը։ Իսպանական յերկաթուղիների բեռնաշրջանառությունը 2—4 անգամ ցած է Գերմանիայի յերկաթուղիների բեռնաշրջանառությունից և մոտավորապես նույնքան էլ հետ է մնում ֆրանսական յերկաթուղացանցի բեռնաշրջանառությունից։ Դրան համապատասխան էլ Իսպանիայում յերկաթուղիների հասույթներն զգալապես ցած են Գերմանիայի ու Ֆրանսիայի համեմատությամբ, իսկ յերկաթուղային փոխադրումների ինքնարժեքն էլ համապատասխանորեն բարձր է։ Մինչդեռ, յերկաթուղային տարիֆների դրանից բխող բարձրությունը, իր հերթին, յերկրի մասնավորապես ներքին նահանգների տնտեսական զարգացումն արգելակող պատճառներից մեկն է դառնում։ Հետաքրքրական է նշել, վոր ցորենը, վորը



ներքին նահանգներից բերվում է ծովափերը, այստեղ թանգ արժե, գլխավորապես մաքսանենգորեն ներմուծվող (բարձր մաքսերից խուսափելու համար) դրսի ցորենից։



Յերկրի տնտեսական հետամնացությունն անդրադառնում է նաև արտաքին առևտրի ստրուկտուրան (կառուցվածքը)։ Մենք արդեն նշել ենք, վոր սննդամթերքները վճռաբար գերակշռում են նրա արտահանության մեջ։ Ներմուծման մեջ էլ (1935 թվին 691 միլիոն վոսկի պեզետ) համարյա նույնքան վճռաբար (50 տոկոս) գերակշռում են պատրաստի իրերը (1935 թվին 350 միլիոն վոսկի պեզետ)։ Ներմուծման մեջ կարևոր տեղ է բռնում նաև հումքը (243 միլիոն վոսկի պեզետ)։ Բուսական, կենդանական և հանքային հումքով լիառատ յերկիրն իր արդյունաբերությանը հումքամատակարարելու գործում համարյա ամբողջությամբ կախված է ներմուծումից։ Միթե դա ա-

մնացայուն ապացույց չէ՞ էկոնոմիկայի համարյա գաղութային բնույթի և խիստ շատ ապրած ֆեոդալիզմի խորապես կործանարար հետևանքների:

Երկրի տնտեսական հետամնացության պատճառով համեմատաբար փոքրաթիվ է իսպանական պրոլետարիատը: Արդյունաբերության, տրանսպորտի և առևտրի մեջ զբաղված են ընդամենը 2 միլիոն վարձու բանվոր: Պաշտոնական վիճակագրության 1935 թվի դեկտեմբերին 416 հազար լիովին և 258 հազար մասնակի գործազուրկ կար: Իսպանական բանվորների աշխատավարձն զգալապես ցածր է, քան Արևմտյան Եվրոպայի մյուս երկրներում: Մյուս կողմից, սննդամթերքների և արդյունաբերական իրերի (վորոնք նույնպես պաշտպանված են բարձր մաքսերով) թանկության պատճառով կյանքը համեմատաբար թանկ է: Իսպանիայում շատ բարձր է բնակարանավարձը: Անգլիական հյուպատոսական հաշվետվությունը, վորը վերաբերում է 1924



թվին, նշում է, որինակ, վոր «բանվորական թաղամասերում մի քանի ընտանիքներ ապրում են մի բնակարանում, վորը, նորմալ պայմաններում, հազիվ թե բավարարի մեկ ընտանիքի»:

## ԺԱՄԱՆԱԿԱԿԻՑ ԻՍՊԱՆԻԱՅԻ ԴԱՍԱԿԱՐԳԱՅԻՆ ՈՒԺԵՐԸ

Դասակարգային ուժերի տեղադրումն Իսպանիայում, վորը պայմանավորված է երկրի էկոնոմիկայի վիճակով, նույնպես շատ ցայտուն կերպով անդրադարձնում է ֆեոդալիզմի մնացուկների ուժեղությունը: Տիրապետող դասակարգերի մեջ ամենից ավելի ուժեղ տնտեսական և սոցիալական դիրքեր ունեն կալվածատերերը:

Կալվածատերերի դասակարգը կարելի յե բաժանել մի քանի խմբերի: Վերին խումբը կազմում են այսպես կոչված Գրանդները— միջնադարյան ֆեոդալների ժառանգները, վորոնք հարյուր հազարավոր հեկտար հողամասեր ունեն և իրենց ձեռքում են պահում ամբողջ նահանգներ: Օրինակ, Տոլե-

դոյի նահանգի հողային տարածության յերեք քառորդը պատկանում է յերկու դյուժին կալվածատերերի։ Գրենադայի նահանգում մի ռայոն կա, վորի տերիտորիայի վրա ապրում են մոտ 70,000 հոգի և վորն ամբողջությամբ պատկանում է յերեք խոշոր կալվածատերերի և ծառայում է նրանց համար վորպես բացառապես զվարճության ու վորսի վայր։ Ամբողջ Խայեն նահանգը պատկանում է մեկ դյուժին կալվածատերերի։ Գրանդները հանդիսանում են գյուղում յեղած ֆեոդալական հարաբերությունների անձեռնմխելիության ամենաջերմ կողմնակիցները։

Մյուս կողմից կալվածատերերի աննշան մասը, չնայած իր ֆեոդալական ծագման, գյուղատնտեսությունը կապիտալիստական ռելսերի վրա փոխադրելու հակումն է ցույց տալիս։ Այդ կալվածատերերը փող են ներդրում արդյունաբերական ձեռնարկությունների մեջ և այդպիսով ձուլվում են կապիտալիստական դասակարգի հետ։



Վերջապես կա բուրժուական ծագում ունեցող հողատերերի վոչ բազմամարդ շերտ։ Այդ կալվածատերերը դուրս են յեկել հարստացած ֆաբրիկանտներից և առանձնապես ռազմական մատակարարումներից հարստացած սպեկուլյանտներից, վորոնք իրենց համար հող են գնել հիմնականում սնապարծության համար, վորպեսզի ընկնեն արիստոկրատիայի շարքերը։

Այդ շերտին առավել մոտիկ է նաև գյուղացիության փոքրաթիվ կուլակային վերնաշերտը։ Ինչպես մենք արդեն մատնանշել ենք, Իսպանիայում կալվածատերերի ու կուլակների թիվը միասին վերցրած հազիվ թե ավելի լինի 200·000-ից։

Հողատերերի դասակարգային կարևորագույն դաշնակիցը կաթոլիկ յեկեղեցին է։ Իսպանական վանքերը և վանական միաբանությունները, վորոնք հսկայական հարստություններ են կուտակել դեռ միջին դարերում, իրենց հողային կալվածքների մասշտաբներով հետ չեն մնում գրանդնե-

րից: Դրա հետ միասին հոգևոր ֆեոդալնե-րը աշխարհիկ ֆեոդալներից ավելի մեծ ճկունություն հանդես բերելով, վերջիննե-րիցս ավելի սերտորեն են կապվել բանկե-րի, արդյունաբերական ձեռնարկություննե-րի, քաղաքների յեկամտաբեր տների հետ և այլն: Յեկեղեցուն ե պատկանում ընդհա-նուր առմամբ ազգային ամբողջ հարստու-թյան մոտ մի յերրորդը և ամբողջ հողի մի յերրորդը:

Պաշտոնական վիճակագրությամբ Իսպա-նիայում մոտ 80·000 պրոֆեսիոնալ աղքատ կա, 1933 թվին Իսպանիայի ամբողջ բնակ-չության մոտ 45 տոկոսն անգրագետ եր— չեր կարողանում վոչ կարդալ, վոչ գրել: Տարրական և միջնակարգ դպրոցների թիվը յերկրում չի անցնում 35 հազարից: Միև-նույն ժամանակ Իսպանիայում մոտ 38 հա-զար տաճար, յեկեղեցի և մատուռ ու 5000 վանք կա: Տերտերների, վանականների և առհասարակ հոգևոր կոչման մարդկանց թիվն Իսպանիայում հասնում ե մինչև



200·000-ի: Այդ սև բանակը լայնորեն ոգ-տագործելով մասսաների կրոնական նախա-պաշարումները, առանձնապես ընկճված և խավար գյուղում, հակահեղափոխական խոշոր ուժ ե հանդիսանում և կիսաֆեոդա-լական խոշոր հողատիրության համարյա հիմնական «մասսայական» բազան ե: Մին-չև 1931 թվի հեղափոխությունը գյուղա-ցիական բազմազան կազմակերպություննե-րի (կոոպերատիվներ և այլն) մեծ մասն ամբողջությամբ գտնվում եր հոգևորակա-նության ձեռքին: Շատերն այժմ ել նրանց ձեռքերում են:

Կալվածատերերի դասակարգային տիրա-պետության կարևորագույն հենարանը մին-չև վերջին ժամանակներս հանդիսացել ե պե-տական ապարատը (չինովնիկությունը) կենտրոնում և առանձնապես տեղերում և ամենից առաջ բանակը: Իսպանական բա-նակի թիվը մոտ 113 հազար ե: Բացի դրա-նից կա մոտ 50·000 գաղութային զորք (Իս-պանական Մարոկկոյում): Նավատորմի

անձնակազմը մոտ 20 հազար է: Նրա նավային կազմն է,—յերկու գծանավ, 7 ռազմանավ, 14 լիդեր, 26 ականակիր, 13 սուզանավ: Ավիացիայի թվի մասին յեղած տվյալները խիստ տարբերվում են: Մենք այս վիճակագրությունը նրա համար ենք բերում ժամանակակից Իսպանիայի դասակարգային ուժերի մասին յեղած բաժնում, վորովհետև իսպանական զինված ուժերը, վորոնք գտնվում են գեներալների և սպաների ձեռքում, հսկայական դեր են խաղում յերկրի քաղաքական կյանքում: Ազգերի Լիգայում իսպանական կառավարության նախկին ներկայացուցիչ Մադարյագի դիպուկ բնորոշմամբ իսպանական բանակը հանդիսանում է «բյուրոկրատական մեքենա, վորը գոյություն ունի գլխավորապես գեներալներին և սպաներին պահելու համար»: Այն ժամանակ, յերբ ֆրանսիական բանակում յուրաքանչյուր 19 զինվորին ընկնում է մեկ սպա, Իսպանիայում յուրաքանչյուր վեց զինվորին է մեկ սպա ընկնում: Բանա-



կը դրականապես ծանրաբեռնված է սպայական կազմով, առանձնապես բարձրաստիճան սպաներով և գեներալիտետով: Իսպանիան ռազմական կարիքների վրա պաշտոնապես ծախսում է պետական բյուջեի 20 տոկոսը, իսկ իրականության մեջ՝ շատ ավելի, ըստ վորում այդ գումարը մեծ մասամբ ծախսվում է անհամար գեներալներին ու սպաներին պահելու վրա, վորոնք բացառապես դուրս են յեկել հողային ազնվականության շարքերից և հետևաբար այդ փողերը գնում են կալվածատերերի դասակարգի ներքաղաքական դիրքերն ամրապնդելուն: Անվերջ և մշտական անհաջող պատերազմները, վորոնք Իսպանիան մղել է Մարոկկոյի ռիֆական ցեղերի դեմ, մեծ մասամբ առաջ են յեկել բարձր սպայության և նրանց թիկունքին կանգնած կալվածատիրական շրջանների անմիջական շահերից: Իսպանական Մարոկկոն տնտեսական տեսակետից առհասարակ շատ քիչ ոգուտ է տալիս Իսպանիային. Մարոկկոյին իշխելու

հետ կապված ծախսերն ել սիստեմատիկաբար ծանր լուծ են Իսպանիայի պետական բյուջեյի վրա: Մարոկկոյում մղված միայն վերջին պատերազմը, վորը վերջացավ 1926 թվին, Իսպանիային նստեց հինգ միլիարդ պեզետ: Դրա փոխարեն Մարոկկոյում կենտրոնացված ավելի քան 100 հազարանոց բանակի գեներալներն ու սպաները յեռակի վարձ եյին ստանում: Պետական ծախսերի ընդհանուր գումարի 10 տոկոսից վոչ պակասը գնում ե իսպանական սպայության պահպանմանը:

**Բուրժուազիան**: Պատմական զարգացման ամբողջ ընթացքը, իսպանական արդյունաբերության հետամնացությունը, մանր ձեռնարկությունների գերակշռությունը և այն փաստը, վոր խոշոր արդյունաբերության հիմնական ձեռնարկությունները պատկանում են ոտարերկրյա կապիտալին, պայմանավորել են իսպանական բուրժուազիայի դասակարգային դիրքերի թուլությունը: Իսպանական պրոլետարիատի մարտական



ակտիվությունն ել ավելի մեծ չափով սահմանափակել ե իսպանական բուրժուազիայի քաղաքական նախաձեռնությունը և քաղաքական անկախությունը՝ կալվածատերերի դասակարգի նկատմամբ նրա ունեցած հարաբերություններում: Իսպանական բուրժուազիան բոլորովին ի վիճակի չե կատարելու յերկրի առաջ կանգնած բուրժուադեմոկրատական և, ամենից առաջ, ագրարային հեղափոխության խնդիրները: Իսպանական բուրժուազիան թե ինքն ե կապված հողատիրության հետ և թե հեղափոխական պրոլետարիատի հանդեպ ունեցած վախը նրան հարկադրում ե տեղի տալ ֆեոդալական ռեակցիոն բանակի ուժերի առաջ:

Իսպանիայում խոշոր դեր ե խաղում **քաղաքային մանր բուրժուազիան**: Յերկրի տնտեսական հետամնացության պատճառով, այստեղ, հարևան յերկրների համեմատությամբ, մեծ թիվ են կազմում արհեստավորները, մանր առևտրականները:

Խիստ զգալի յե նաև ստորին և միջին ծառայողների, ազատ պրոֆեսիայի անձանց և ինտելիգենցիայի թիվը։ Իսպանական մանր բուրժուազիայի ընդհանուր թիվը մոտավորապես կարելի յե հաշվել մեկ միլիոն։ Այն փաստը, որ մանր բուրժուազիայի հիմնական մասսան կենտրոնացված ե մեծ քաղաքներում, մեծ կարևորություն ե տալիս նրա քաղաքական ակտիվությանը։ Իր քաղաքական համակրություններով այդ մանր բուրժուական մասսան, ինչպես և մյուս յերկրների մանր բուրժուազիան, խիստ անկայուն ե։ Ինտելիգենցիայի մի մասը գտնվում ե յեկեղեցու զգալի ազդեցության տակ։ Անկասկած, յեկեղեցու ազդեցությունը մեծ ե նաև իսպանական քաղաքային մանր բուրժուազիայի մյուս շերտերի վրա։ Դրա փոխարեն մանր բուրժուազիայի և ինտելիգենցիայի մյուս մասը խիստ թշնամորեն ե տրամադրված յեկեղեցու հանդեպ։ Ըստ որում վերջին ժամանակներս, Իսպանիայի մանր բուրժուա-



կան լայն մասսաներն ավելի ու ավելի յեն թեքվում հեղափոխական պրոլետարիատի կողմը։ Իսպանական ինտելիգենցիայի, առանձնապես իսպանական ուսումնական հաստատությունների ուսանողների մեջ խոր տեղաշարժեր են կատարվում դեպի ձախ։

**Հեղափոխության շարժիչ ուժերը.**—Իսպանական հեղափոխական շարժման հիմնական շարժիչ ուժերը հանդիսանում են արդյունաբերական պրոլետարիատը, գյուղատնտեսական բանվորները և գյուղացիական չքավորական մասսաները։ Այդ դասակարգերն ամբողջությամբ և առանց վերապահումների շահագրգռված են ֆեոդալիզմի մնացուկների վերացմամբ, պորտաբույծ յեկեղեցու ջախջախմամբ և բուրժուա-դեմոկրատական հեղափոխության հիմնական խնդիրների կատարմամբ։ Իսպանիայի գյուղատնտեսական բանվորները և արդյունաբերական պրոլետարիատը հեղափոխական պայքարի պանծալի, հեռավոր անցյալից յեկող տրադիցիաներ ունեն։

Բարսելոնում դեռ 19-րդ դարի կեսերին ընդհանուր գործադուլ տեղի ունեցավ, որին մասնակցում էր մոտ 40 հազար բանվոր:

Իսպանական պրոլետարիատի հեղափոխական դիրքի թույլ տեղն այն է, որ նրա ուժերը կտորակված են և նա անջատված է գյուղացիությունից: Երկրի զանազան մասերի միջև չեղած կապերի ֆեոդալական թուլությունը, մանր ձեռնարկությունների, առանձնապես անցյալում, գերակշռությունը հանդեցրել են այն բանին, որ իսպանական պրոլետարիատի պայքարի առաջին կազմակերպիչները դարձել են անարխիստները—ըստ էության մանր բուրժուական այն թեորիայի մարտնչողները, որը բացասում է իշխանության համար մղվող քաղաքական պայքարը և որն աշխատավորների սոցիալական ազատագրումը հնարավոր է համարում բանվորների կողմից այն ձեռնարկությունների անմիջական գրավմամբ, որոնց մեջ նրանք



աշխատում են: Պատմական իրականությունը բազմիցս ապացուցել է անարխիզմի այդ թեորիաների ուտոպիականությունը (անիրագործելիությունը), այնուամենայնիվ, իսպանական պրոլետարիատը, անարխիստական պրոպագանդի ազդեցության տակ, թե՛ քաղաքում և թե՛ գյուղում ամբողջ տասնամյակներ շարունակել է հյուծել իր ուժերն առանձին ձեռնարկությունները գրավելու անպտուղ փորձերի, անջատ գործադուլների և հերոսական, բայց նույնպես անջատ-անջատ ու միանգամայն անպատրաստ ապստամբությունների վրա, որոնք հեշտությամբ ճնշվում էին պետական իշխանության կենտրոնացված ապարատի կողմից: Իսպանական մարզերի միջև մինչև այժմ պահպանված թույլ կապը, մանր ձեռնարկությունների մինչև այժմ պահպանված գերակշռությունն ապահովել են անարխիստներին իսպանական բանվոր դասակարգի վրա մինչև այժմ էլ զգալի ազդեցություն ունենալը: Նրանց ազդե-

ցության կազմակերպական բազան հանդիսանում են անարխիստական սինդիկատները (պրոֆմիությունները), վորոնք միացված են 1911 թվին հիմնված Աշխատանքի անարխո-սինդիկալիստական ազգային կոնֆեդերացիայի կողմից: Կոնֆեդերացիայի առաջնորդը Պեստանյան է: Անդամների թիվը, 1936 թվի մայիսի տվյալներով, հասնում է 530 հազարի:

1876 թվին դրաշար Պաբլո Իգլեսիասը հիմնեց իսպանական սոցիալիստական կուսակցությունը, վորն ստեղծեց իր պրոֆմիութենական միավորումը—Բանվորների ընդհանուր միությունը:

1920 թվին կազմվեց կոմունիստական կուսակցությունը, իսկ նրա հետևից—հեղափոխական պրոֆմիությունների միավորումը—Աշխատանքի կարմիր ունիտար ընդհանուր կոնֆեդերացիան: Երկու կուսակցությունների, պրոֆմիութենական յերեք կենտրոնների առկայությունը, ինչպես նաև տերտերների ղեկավարության տակ գտնվող



այսպես կոչված կաթոլիկյան պրոֆմիությունների ակտիվ գործունեությունը բավականին ցայտուն կերպով բնորոշում են իսպանական բանվոր դասակարգի խիստ կոտորակված լինելը:

## ՔԱՂԱՔԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

Բնութագրելով Իսպանիայի դասակարգային ուժերն այնպես, ինչպես նրանք կային 1931 թվի հեղափոխության մոմենտին, մենք այժմ կտանք վերջին վեց տարիների ընթացքում իսպանական քաղաքական կյանքին մասնակցող կարևորագույն կուսակցությունների համառոտ բնութագրությունը:

Նախ կանգ առնենք բուրժուական կուսակցությունների վրա: Դրանք կարելի յե բաժանել յերեք խմբի.—առաջին՝ ծայրահեղ աջերը, միապետականները, վորոնք ներկայացնում են խոշոր կալվածատերերին և ֆինանսական կապիտալի (բանկերի և արդյունաբերական կապիտալի) վերնաշերտին. յերկրորդ՝ հանրապետական կենտրոնի կուսակցությունները, վորոնք գլխավորա-

պես ներկայացնում են առևտրա-արդյունաբերական միջին ու խոշոր բուրժուազիային, իսկ մի քանիսն էլ՝ նաև ֆինանսական կապիտալը, չորրորդ՝ հանրապետական ձախ կուսակցությունները, որոնք առավելապես միացնում են մանր ու մասամբ միջին բուրժուազիային:

Առաջին խմբին պատկանում են,—«Իսպանական վերածնությունը», «Իսպանական ֆալանգը» (իրեն բացարձակ կերպով համարում է իտալական ֆաշիզմի հետևորդ, կազմակերպում է այսպես կոչված նացիոնալ-սինդիկալիստական գրոհային ջոկատներ՝ հեղափոխական շարժման դեմ տեռորիստական պայքար մղելու համար, ղեկավարվում է նախկին դիկտատոր Պրիմո դե Ռիվերայի որդու ղեկավարության տակ), «Ակսիոն պոպուլարը» (ֆաշիստական կուսակցություն՝ Ժիլ Ռոբլեսի ղեկավարությամբ), «Ակսիոն կաթոլիկան» (որը ղեկավարում է յեկեղեցու բոլոր մասսայական, առանձնապես գյուղի, կազմակեր-



պությունները), ազգային ագրարային կուսակցությունը: «Իսպանական վերածնության», «Իսպանական ֆալանգի» և ազգային ագրարային կուսակցության մի շարք կողմնակիցներ 1934 թվի վերջերին ստեղծեցին այսպես կոչված «Ազգային բլոկ»՝ Կալվո Սոտելոյի գլխավորությամբ: «Ազգային բլոկի» ծրագիրը նախատեսում է պառլամենտական սիստեմի վերացումը և ֆաշիստական դիկտատուրայի հռչակումը: «Ակսիոն պոպուլարը», «Ակսիոն կաթոլիկան» և մի շարք այլ ֆաշիստական կուսակցություններ ու կազմակերպություններ 1933 թվին միացան այսպես կոչված Ինքնավարական աջերի իսպանական կոնֆեդերացիայի կամ հակիրճ ասած՝ ՍԵԴԱ-յի մեջ: Ժիլ Ռոբլեսի գլխավորած ՍԵԴԱ-ն առաջադրում է «Ազգային բլոկի» ծրագրին նման ծրագիր և գլխավորապես ներկայացնում է ֆինանսական կապիտալի հետ կապված կալվածատերերին, ֆինանսական կապիտալի մի մասին, կաթոլիկ յեկեղե-

ցում և գեներալիտետի մի մասին: Ժիլ Ռոբլեսը սերտ կապեր ունի անգլիական կապիտալի հետ:

Երկրորդ խմբին, այսպես կոչված կենտրոնի կուսակցություններին պատկանում են առաջադիմական կուսակցությունը (ներկայացնում է արդյունաբերողների մի մասի, բանկերի, մանր կալվածատերերի շահերը և գլխավորվում է նախկին նախագահ Սամորայի կողմից) և «Ռադիկալ կուսակցությունը»: Վերջինս Իսպանիայի ամենախոշոր բուրժուական կուսակցությունն է, ներկայացնում է ֆինանսական կապիտալի մի մասը, առանձնապես տարբերկյա կոնցեսիաների, առաջին հերթին ֆրանսիական և ամերիկյան կապիտալի հետ կապված շահերը: Կապված է մանր բուրժուական շրջանների հետ: Կուսակցության հիմնադիրն ու առաջնորդը Լերուսն է, որը 1931 թվի հեղափոխությունից հետո յեղավ նախ արտաքին գործերի մինիստր, իսկ այնուհետև



հաճախակի դարձել է պրեմյեր (կառավարության պարագլուխ):

Երրորդ խմբին, հանրապետական ձախ կուսակցություններին պատկանում են «Հանրապետական միությունը» (կապված է Կատալոնիայի արդյունաբերության հետ և արտացոլում է քաղաքային մանր բուրժուազիայի տրամադրությունները, առաջնորդը Մարտինես Բարրիոսն է): «Հանրապետական ձախը» (մանր բուրժուական կուսակցություն, որը ղեկավարում է Իսպանական Հանրապետության ներկայիս նախագահ՝ Ազանյան), «Կատալոնական ձախը» (ներկայացնում է քաղաքային մանր բուրժուազիային, ինտելիգենցիային և Կատալոնիայի գյուղացիությանը): Մանր բուրժուական կուսակցությունների թվին կարելի յե դասել նաև այսպես կոչված «Իբերիայի[1] անարխիստների ֆեդերացիան», թեև այդ ֆեդերացիան իրեն քաղաքական կուսակցու-

1) Իբերիա—Իսպանիայի հին անունն է՝ այնտեղ բնակվող ցեղերի անունով:

թյուն չի համարում: Ֆեդերացիան ղեկավարում է Աշխատանքի անարխո-սինդիկալիստական ազգային կոնֆեդերացիան: Ունի 5 հազար անդամ:

Բանվոր դասակարգի կուսակցությունները: — Կոմունիստական կուսակցությունը, վոր 1931 թվի հեղափոխության ժամանակ դեռևս պրոպագանդիստական վոչ մեծ խումբ էր, ֆաշիստական խռովության մոմենտին 104 հազար անդամ ուներ: Սոցիալիստական կուսակցությունը, վորը վերջին, 1935 թվի սկզբին վերաբերող տվյալներով, ուներ 50 հազար անդամ:

## 1931 ԹՎԻ ՀԵՂԱՓՈԽՈՒԹՅՈՒՆԻՑ ՄԻՆՉԵՎ ԱՍՏՈՒՐԻԱՅԻ ԿՈՄՈՒՆԱՆ

1931 թվի ապրիլյան հեղափոխությունը, վորը վերացրեց միապետությունը, տեղաշարժեր կատարեց իշխող դասակարգերի բանակում: Մինչև հեղափոխությունը իշխանությունը գտնվում էր կիսաֆեոդալական կալվածատերերի ձեռքին, վորոնք սե-



տական կարկանդակը բաժանելիս չէին մոռանում նաև «կրտսեր եղբորը» (իսպանական պայմաններում)—ֆինանսական կապիտալին (ֆինանսական կապիտալի շահերի հոգացողությունը առանձնապես ուժեղ կերպով յերևան յեկավ Պրիմո դե Ռիվերայի տնտեսական քաղաքականության մեջ): Հեղափոխությունից հետո իշխանությունն անցավ ֆինանսական կապիտալի ձեռքը, վորն, իր հերթին, շատ հեռուն գնացող հոգատարություն ցուցաբերեց յերեկվա «ավագ եղբոր»—կիսաֆեոդալական կալվածատերերի շահերի նկատմամբ: Միապետության վերացումն իսկ կատարվեց իշխող այդ յերկու հիմնական դասակարգերի սիրային գործարքի հետևանքով, մի գործարք, վորի նպատակն էր Ալֆոնսի թագը զոհել հանուն վոչ միայն մասնավոր սեփականության կարգի փրկության, այլև հողատեր ազնվականության հիմնական ֆեոդալական արտոնությունների փրկության:

Կենտրոնի և ձախ բուրժուական կուսակ-

ցությունների, ինչպես նաև սոցիալիստների կառավարության մեջ առաջ քաշելու տակ քողարկված մանյովրը հաջողություն ունեցավ: Քաղաքականապես վոչ բավարար հասուն և ճիշտ ղեկավարությունից զրկված մասսաները հաղթանակի յերեվութականությունից հարբած, միապետության վերացումը և մակերեսային ռեֆորմներն ընդունեցին վորպես իրենց կենսական կարիքների առաջիկա բավարարման յերաշխիք: Սակայն նրանք շուտով հիասթափվեցին: Դեռ 1931 թվի մայիսին Իսպանիայով անցավ գործադուլների և հզոր ցույցերի բուռն ալիք, վորի ժամանակ հրդեհվեցին վանքեր ու յեկեղեցիներ: Մասսաները տեսան, ավելի ճիշտ՝ բնազդորեն զգացին, վոր հիմնականում ամեն բան մնացել է նույնը, վոր հանրապետությունը լիովին յուրացրել է միապետության ստեղծած հարստահարման ու ճնշման ապարատը: Նրանք պահանջում եյին վերացնել այդ դրությունը: Նրանք պահան-



ջում եյին ամենաարագ կերպով բավարարել բանվորների կարիքները և կալվածատերերի հողը բաժանել գյուղացիներին: Գյուղացիներն սկսեցին տարերայնորեն գրավել գրանդների կալվածքները:

Կառավարությունը հարկադրվեց դիմելու մի շարք նոր մանյովրների: 1931 թվի դեկտեմբերին ընդունված սահմանադրությունն Իսպանիան հանդիսավոր կերպով «աշխատավորության բոլոր դասակարգերի հանրապետություն» հռչակեց («բոլոր դասակարգեր» բառերն ավելացվեցին աջերի պնդմամբ, վորոնք վախեցել եյին հանրապետական սահմանադրության նրանց տեսակետով խիստ «հեղափոխական» ձևակերպումներից): Այնուհետև ազդարարվեց ագրարային ռեֆորմը, վորն, այն ժամանակվա պրեմյեր մինիստր Սամորայի բառերով, «կանխում է այն հասարակակարգին սպառնացող վտանգը, վորի պաշտպանությամբ մենք շահագրգռված ենք»:

Ագրարային ռեֆորմը, ինչպես պետք եր

տալսել, ամենևին էլ չեր նշանակում կալվածատերերի հողերը տալ գյուղացիներին, այլ, ընդհակառակը, սարսափի յեր յենթարկում գյուղացիական պահանջները՝ ֆեոդալական կալվածքները բաժանելու մասին: Նա բացահայտորեն չեր համապատասխանում գյուղացիության հույսերին ու պահանջներին: Հեղափոխական շարժումը գյուղում շարունակվեց բուռն թափով վեր բարձրանալ: Սակայն այն «վտանգը», վորը կանխելու մասին հոգ եր տանում կառավարությունը, այնուամենայնիվ ժամանակավորապես թուլացվեց գյուղացիության անկազմակերպվածության, բանվորական շարժման հետ նրա անբավարար կապի և այն ժամանակ գյուղում կոմկուսակցության դեռևս նվազ ազդեցության պատճառով: Նույն պատճառները պայմանավորեցին նաև հեղափոխական բանվոր դասակարգի համեմատական մեկուսացումը և դրանով թուլացրին նրա դիրքերը: Մենք արդեն չենք խոսում այն մասին, վոր սո-



ցիալիստական կուսակցությունը հեղափոխության առաջին տարիներին ամբողջությամբ կանգնած եր բուրժուազիայի հետ դասակարգային համագործակցության դիրքերում: Անարխիստները, վորոնք դեռ մինչև հեղափոխությունը խելք եյին արել հարմարվել Պրիմո դե Ռիվերայի ֆաշիստական ռեժիմին, բացահայտորեն դավաճանական դեր եյին խաղում: Կոմունիստական կուսակցությունը, ինչպես մենք արդեն մատնանշել ենք, դեռևս շատ թույլ եր, և նրա շարքերում համառ պայքար եր տեղի ունենում ամենաբազմազան ոպորտունիստական թեքումների ներկայացուցիչների դեմ, վորոնք ոբյեկտիվորեն ներկայացնում եյին մանր բուրժուազիայի ճնշումը պրոլետարիատի վրա:

Իշխանությունից զրկված ֆեոդալական-յեկեղեցական ռեակցիան այդ պայմաններում սկսում ե վերստին կազմակերպել իր ուժերը: Խոշոր բուրժուազիան, վախեցած բանվոր դասակարգի վիթխարի յելույթներ-

րից և աճող յեռանդից, ավելի ու ավելի վճռաբար է քշում ռեակցիայի բանակը, ավելի ու ավելի սերտ մերձենալով կալվածատերերի ու յեկեղեցու հետ: Նրանց միասնական սև ճակատը ձևավորվում է հռչակավոր ՍԵԴԱ-ի շարքերում: ՍԵԴԱ-ի առաջնորդ Խիլ Ռոբլեսը, թեև իրեն բացահայտ կերպով հակահեղափոխական է անվանում (չհետևելով Հիտլերին ու Մուսոլինուն, վորոնք պնդում են, թե իբր իրենց գլխավորած կուսակցությունները հեղափոխական են), այնուամենայնիվ, վորոշ դեմագոգիկ լոզունգներով համեմում է ավտորիտական դիկտատուրայի իր պահանջները և ձեռնպահ է մնում հակահեղափոխական կարգերի վերականգնման բացահայտ պրոպագանդից: ՍԵԴԱ-ն դրա հետ միասին շատ հմուտ կերպով օգտագործում է գյուղացիության արագ և անզուսպ կերպով աճող դժգոհությունը—այս անգամ ագրարային ռեֆորմի խիստ դանդաղ կիրառումից— և համեմատաբար կարճ ժամ-



կետում, հոգևորականության ոժանդակությամբ, կարողանում է գյուղում զգալի կերպով ուժեղացնել իր դիրքերը:

Քաղաքային մանր բուրժուազիան, ապրիլյան հեղափոխությունից վոչ մի շոշափելի արդյունք չտեսնելով, նույնպես սկսում է տատանվել և ընկնում է ֆաշիզմի կողմից վարպետորեն դրված թակարդները:

«Աշխատավորության բոլոր դասակարգերի հանրապետության» կառավարությունը վոչ միայն չէր փորձում, սանձահարել ֆաշիստական-միապետական ռեակցիայի բարձրացող գլուխը, այլ բանվոր դասակարգի կազմակերպությունների դեմ ուղղված իր տեռորով օբյեկտիվորեն ոժանդակում էր նրան:

1933 թ. աշնանը տեղի ունեցած պառլամենտական ընտրությունները հաղթություն բերին ՍԵԴԱ-յին: Բուրժուական ձախ կուսակցությունների ներկայացուցիչները հեռացվեցին կառավարությունից:

Պրոլետարիատն առավել ևս շարունակում էր հերոսական պայքար մղել դեռ աճող ֆաշիզմի դեմ, վիթխարի գործադուլներով և ցույցերով պատասխանելով յուրաքանչյուր ռեակցիոն միջամտության, ՍԵԴԱ-յի գործակալների յուրաքանչյուր արարքին: Ֆաշիզմն, իր հերթին, սպեկուլյացիայի առարկա դարձնելով բանվորական մասսաների հերոսությունը, դավադիր կերպով ամենաստոր պրովոկացիա յեր պատրաստում, յենթադրելով բանվոր դասակարգին դրդել անպատրաստ յելույթների և այդ բանն օգտագործել վորպես առիթ՝ արյունոտ հաշիվ տեսնելու պրոլետարական շարժման հետ և դրանով իսկ ապրիլյան հեղափոխության վերջին, դեռևս չվերացված մնացորդների հետ: 1934 թվի հոկտեմբերին ՍԵԴԱ-յի յերեք ներկայացուցիչներ մտնում են կառավարության մեջ: Հաղթանակող ֆաշիզմը բարձրացնում է յերեսկալը: Ի պատասխան դրան վիթխարի ընդհանուր գործադուլ սկսվեց, վոր Կատալոնիայում



և գլխավորապես Աստուրիայում վերջացավ զինված ապստամբությամբ: 15 օր կատաղի կռիվ տեղի ունեցավ աստուրական հանքագործների կարմիր գվարդիայի և ֆաշիզմի ուժերի միջև, վորին իսպանական համարյա ամբողջ բանակը շարժեց դեպի իսպանական Դոնբաս, և առաջին հերթին Իսպանական Մարոկկոյից այնտեղ փոխադրեց օտարերկրացիների լեգիոնը—մարդասպանների այդ բանդան, վոր հավաքագրված է մեծ մասամբ քրեական հանցագործներից և ռուս սպիտակ-գվարդիականներից: Վերջիններս այստեղ լիակատար չափով յերևան բերին դահիճների և ժանդարմների իրենց բնությունը:

## «ՍԵՎ ՅԵՐԿԱՄՅԱԿԸ» ՅԵՎ ՄԻԱՍՆԱԿԱՆ ՃԱԿԱՏԻ ՀԱՄԱՐ ՄՂՎՈՂ ՊԱՅՔԱՐԸ

Աստուրական կոմունան խեղդվեց արյան մեջ: 30 հազար գերյալ մարտիկներ բանտ նետվեցին և սոսկալի տանջանքների յենթարկվեցին: Ռազմա-դաշտային դատարան-

ներն ավելի քան 100 մահվան վճիռներ արձակեցին։ Սկսվեց 1934—1936 թ. թ. «սև յերկամյակը», վորը բնութագրվում ե 1931 թվի հեղափոխության բոլոր հետքերն ըստ հնարավորին շուտ սրբելու՝ ֆաշիզմի տենդագին փորձերով։

Կատալոնիայի ինքնավարությունը չեղյալ հայտարարվեց։ Ագրարային ռեֆորմի վերաբերյալ որենքին այնպիսի «ուղղումներ» ավելացվեցին, վորոնք այդ որենքն իսկական «վոսկու հանք» դարձրին կալվածատերերի համար և հարստության նոր աղբյուր՝ գյուղացիությանն անողոքաբար թալանելու հաշվին։ Ավելի քան 30 հազար գյուղացիական ընտանիքներ քշվեցին իրենց վարձակալած հողերից։ Բանվորական կազմակերպությունների մշակած և ձեռնարկատերերի կողմից 1932 թվին ընդունված կոլպայմանագրերը վոչնչացվեցին։ Քաղաքներում շատ դեպքերում աշխատավարձն որական 10—12 պ. իջեցվեց 4—5 պեզետի։ Գյուղում որավարձն 8—9 պեզետից կըր-



ճատվեց հաճախ մինչև 1½ պեզետի՝ տղամարդկանց համար և կես պեզետի՝ կանանց համար։ Աշխատավարձն ե՛լ ավելի իջեցնելու նպատակով աշխատելով արհեստականորեն ուժեղացնել առանց այն էլ հսկայական գործազրկությունը, ձեռնարկատերերն սկսեցին աշխատուժ ներմուծել Փորթուգալիայից։

«Սև յերկամյակը», սակայն, չեր նշանակում ֆաշիզմի հաղթանակը։ Աստուրիայում կատարված դահճական սխրագործությունների հաջորդ օրն իսկ կառավարությունը հարկադրված եր համոզվել, վոր բանվոր դասակարգի ուժերը չեն ջախջախված։ Աստուրական հանքագործների առաջնորդներ Գոնսալես Պենյայի և մյուսների մահվան դատավճիռների դեմ բողոքի մասսայական շարժումն այնպիսի չափեր ընդունեց, վոր կառավարական ճգնաժամի սպառնալիք ստեղծվեց։ Խիլ Ռոբլեսը, վորը դրանից քիչ առաջ մտել եր կառավարության մեջ վորպես զինվորական մինիստր,

պահանջում էր մահապատիժ: Նախագահ Լերուն անհրաժեշտ էր համարում զիջումների դիմել: Կառավարությունն ինքը հարկադրվեց զիջել: Մահվան վճիռները վերացվեցին: Լերու—Խիլ Ռոբլեսի կառավարությունը 1935 թվի հունիսին մասսաների ճնշման տակ հարկադրված եղավ վերացնել ռազմական դրությունը և բանվորական կազմակերպություններին հարաբերական ազատության որոշ բաժին տալ: Շուտով Ռոբլեսը հարկադրված եղավ հրաժարական տալ: Սկսվեց կառավարական ճգնաժամերի շրջանը, որն անդրադառնում էր, մի կողմից, կառավարող ֆաշիզմի բանակում աճած անվստահությունը և շփոթը, մյուս կողմից՝ հակաֆաշիստական ժողովրդական ճակատի աճող դրոհը, ամրացող կազմակերպվածությունը և ուժերի կոնսոլիդացիան:

Աստուրիայի պայքարը, որտեղ տարերայնորեն կոմունիստ, սոցիալիստ ու անկուսակցական բանվորների միասնական ճա-



կատ առաջացավ, որին, հակառակ առաջնորդների կամքին, միացան նաև անարխո-սինդիկալիստ բանվորները, ակնառու կերպով ցույց տվեց բանվոր դասակարգի միասնական հսկայական կարևորությունը: Աստուրական բանվորների մարտակոչը՝ «Յունիոս խերմանոս պրոլետարիոս» («Միացեք, եղբայր պրոլետարներ») դարձավ իսպանական բանվոր դասակարգի ամենաժողովրդական լոզունգը: 1935 թվի հուլիս-օգոստոսին տեղի ունեցած Կոմինտերնի 7-րդ կոնգրեսը և, մասնավորապես, ընկեր Դիմիտրովի ելույթը հսկայական ազդեցություն գործեցին Իսպանիայի բանվորական մասսաների վրա, պրոլետարական միասնական ճակատի շարժմանը նոր լիցք տալով: Ֆրանսիայի ռեֆորմիստական և հեղափոխական պրոֆմիությունների միացման անմիջական ազդեցության տակ Իսպանիայում իրար են միանում Աշխատանքի կարմիր ունիտար ընդհանուր կոնֆեդերացիան և բանվորների Ընդհանուր ռեֆորմիս-

տական միությունը։ Նոր պրոֆմիութենական միավորման շարքերում (վորը նույնպես կոչվում է Բանվորների ընդհանուր միություն) այժմ մեկ միլիոնից ավելի արդյունաբերական և գյուղատնտեսական բանվորներ կան։ Պրոֆմիութենական միասնության իրագործման կապակցությամբ պրոֆմիությունների անդամների թիվը զգալիորեն աճեց։ Մի շարք տեղերում նրանց անդամների թիվը կրկնապատկվեց։ Ռեֆորմիստական և հեղափոխական պրոֆշարժման միացումը խոր ազդեցություն գործեց նաև անարխիստական պրոֆմիությունների վրա, վորը շատ հստակ կերպով յերևում է անարխո-սինդիկալիստական ղեկավարության վերջին մանյովրներից։

Այնուհետև տեղի ունեցավ իսպանական կոմյերիտմիության միացումը յերիտասարդության սոցիալիստական միության հետ։ Միացումից առաջ կոմյերիտմիությունը 50682 անդամ ուներ, իսկ սոցիալիստական



միությունը—65,500, սակայն արդեն միացումից մի քանի շաբաթ հետո յերիտասարդության միացյալ կազմակերպությունը 140 հազար անդամ ուներ։

Խիստ կարևոր տեղաշարժեր են կատարվում սոցիալիստական կուսակցության մեջ։ Պրոլետարական մասսաների՝ բանվոր դասակարգի հեղափոխական ավանգարդի հետ մարտական միասնություն կնքելու աճող ձգտումը պատճառ դարձավ, վոր սոցիալիստական կուսակցության մեջ Լարգո Կաբալյերոյի գլխավորությամբ ուժեղ ձախ թև գոյանա։ Լարգո Կաբալյերոն ակտիվորեն մասնակցեց Մադրիդի հոկտեմբերյան (1934 թվի) ապստամբության ղեկավարությանը, վորի համար ձերբակալվեց և դատի տրվեց։ Լարգո Կաբալյերոյի արդարացումը, իր հերթին, ֆաշիստական բանակի անհաստատության և բանվորական մասսաների, այդ թվում սոցիալիստական կուսակցության անդամների արագ հեղափոխականացման շատ ցայտուն ցույց էր։ Սո-

ցիալիստների ձախ թևը, անմիջականորեն անդրադառնալով մասսաների այդ տրամադրությունները, օժանդակում է պրոֆմիութենական միասնության կենսագործմանը, ինչպես նաև յերիտասարդության կոմունիստական և սոցիալիստական միությունների միացմանը: Ձախ թևը չի թաքցնում Կոմունիստական Ինտերնացիոնալի նկատմամբ ունեցած իր համակրանքը: Նրա ծրագրում կա պրոլետարական միասնական կուսակցության ստեղծման, իշխանությունը գրավելու և պրոլետարիատի դիկտատուրա հաստատելու համար զինված ապստամբության գաղափարը: Անցած գարնանը, սոցիալիստների Մադրիդի կազմակերպության ժողովում, վորը գլխավորում եր Լարգո Կաբալյերոն, վորոշվեց սոցիալիստական կուսակցության առաջիկա համագումարում դնել պրոլետարիատի միասնական կուսակցության ստեղծելու հարցը: Սոցիալիստական կուսակցության մեջ տեղի ունեցած այդ տեղաշարժերն էլ պառլամենտական



ընտրությունների նախօրյակին, 1936 թվի փետրվարի 16-ին, հանգեցնում են բանվորական միասնական ճակատի և ժողովրդական ճակատի առաջացմանն Իսպանիայում:

Աստուրիայում տեղի ունեցած դեպքերը և Լերուս— Խիլ Ռոբլեսի կառավարության ֆաշիստական քաղաքականությունը հակաֆաշիստական տրամադրությունների նոր մակընթացություն առաջ բերին քաղաքային մանր բուրժուազիայի ու ինտելիգենցիայի շարքերում: Սակայն ամենից գլխավորն այն է, վոր ագրարային ռեֆորմի նկատմամբ յեղած ֆաշիստական «ուղղումները», 30 հազար վարձակալողներին հողից զրկելը, գյուղում՝ մինչև ապրիլյան հեղափոխությունը յեղած կարգերի վերականգնումը, բանվոր դասակարգի հերոսական պայքարի ցայտուն որինակների հետ միասին հեղափոխական խմորումն առաջ բերին գյուղացիական մասսաներում: 1933 թվականի ընտրությունների ժամանակ գյուղում ֆաշիզմի կարծես թե ամբողջ-

վող ազդեցությունն սկսում է նվազել: Գյուղացիության մեջ գնալով ավելի ու ավելի ժողովրդականություն է ձեռք բերում բանվորա-գյուղացիական ալիանսներ (միություններ) և ժողովրդական լայն ճակատ կազմակերպելու լոզունգը՝ ֆաշիզմի և նախահեղափոխական կարգերի կողմնակիցների դեմ պայքարելու համար:

Ժողովրդական լայն մասսաների հակաֆաշիստական աճող շարժման պայմաններում, 1936 թվականի փետրվարյան ընտրությունների նախօրյակին, Ժողովրդական ճակատի շարքերում միանում են կոմունիստական կուսակցությունը, սոցիալիստական կուսակցությունը (ձախ թևի ճնշման տակ), բանվորների ընդհանուր միությունը և մի շարք այլ պրոլետարական կազմակերպություններ, ինչպես նաև «Կատալոնյան ձախ», «Հանրապետական միություն» և «Հանրապետական ձախ» մանր բուրժուական կուսակցությունները:

Ընտրությունները վիթխարի ընդհարում-



ների ասպարեզ դարձան ժողովրդական հա-
կաֆաշիստական ճակատի և պետական ա-
պարատի վրա հենվող ու նախընտրական
կատաղի տեռորի մեթոդներով գործող՝
կառավարող ֆաշիզմի միջև: «ABC» թերթը
(միապետականների օրգանը) ընտրություն-
րի նախօրյակին կոմունիստական և սոցիա-
լիստական կուսակցությունների ու ձախ
հանրապետականների 1500 գործիչների մի
ցուցակ է հրապարակում, վորոնք, ըստ
թերթի մեկնաբանության, պետք է անհա-
պաղ վոչնչացվեն, վորպեսզի ապահովվի
Իսպանիայի «հանգիստը»: Ժողովրդական
ճակատի գործիչների մասսայական ձերբա-
կալություններ են տեղի ունենում: Ձերբա-
կալվում են կոմունիստ Դոլորես Իբարրու-
րին և Ուրիբեն: Ընտրությունների, որը
ժանդարմների ուժեղ պահակախմբերը բա-
ցառձակ կերպով փորձեցին բանվորներին և
ժողովրդական ճակատի մյուս բացահայտ
ներկայացուցիչներին խանգարել մոտենա-
լու քվեատուփերին:

Սակայն նախընտրական տեռորը կառավարող բանակին չփրկեց պարտությունից: Փետրվարի 16-ի ընտրություններին աջ և կենտրոնի կուսակցությունները կորցրին 147 մանդատ (պատգամավորական տեղեր), վորոնք անցան ժողովրդական ճակատի կուսակցություններին (ընդամենը 483 մանդատ): Մասնավորապես սոցիալիստական կուսակցությունը նվաճեց 40 նոր մանդատ (98՝ նախկին 58-ի փոխարեն), կոմունիստական կուսակցությունը նվաճեց 15 նոր մանդատ (16՝ նախկին 1-ի փոխարեն): Կոմունիստները ընտրությունների ժամանակ 400 հազար ձայն ստացան:

Բացի դրանից ընտրությունները բացառիկ հզոր խթան հանդիսացան կոմունիստական կուսակցության աճման համար: Մինչև ընտրությունները կուսակցությունն ուներ 20 հազար անդամ, այժմ՝ ավելի քան 100 հազար: Կուսակցության V համագումարի բացման մոմենտին (վորը ծրագրված է



օգոստոս ամսին) ենթադրվում է, վոր անդամների թիվը կհասնի 200 հազարի:

## ՓԵՏՐՎԱՐԻ 16-Ի ԸՆՏՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԻՑ ՀԵՏՈ

Ընտրությունների արդյունքները պատճառ դարձան, վոր հրաժարվի Վալյադարեսի «միջանկյալ» կառավարությունը, Վալյադարես, վորին առաջ էր քաշել Խիլ Ռոբլեսը, վորպեսզի քողարկի իշխանության ֆաշիստական բնույթը: Նրան փոխարինեց ժողովրդական ճակատի մեջ մտնող—«Հանրապետական ձախ» կուսակցության առաջնորդի՝ Ազանյայի կառավարությունը: Ֆաշիզմի պարտությունն առաջ բերեց նաև նախագահ Սամորայի հրաժարականը, վորը հարկադրված էր հեռանալ նոր կազմի կորտեսների վորոշման համաձայն, և ժողովրդական մասսայական ելույթների անմիջական ճնշման տակ: Մայիսի 10-ին նախագահ ընտրվեց Ազանյան,

վորին վորպես պրեմյեր (կառավարության ղեկավար) փոխարինեց Կասսարես Կիրոգան, վորը նույնպես «Հանրապետական ձախ» կուսակցության անդամ եր և մինչ այդ զբաղվում եր ներքին գործերի մինիստրի պոստը:

Ասանյայի և Կիրոգայի կառավարությունները ժողովրդական ճակատի կառավարություններ չեյին: Նրանք ձախ հանրապետական կառավարություններ եյին, վորոնք հենվում եյին ժողովրդական ճակատի վրա և կիրառում եյին նրա ծրագիրը, պրոլետարական կուսակցությունների անմիջական հսկողության և բանվոր դասակարգի ու գյուղացիության մասսայական յելույթների անմիջական ներգործության տակ: Ամենից առաջ, հասկանալի յե, ներումն շնորհվեց.—30 հազար քաղաքական կալանավորներ (մեծ մասամբ Աստուրիայի հեղափոխական մարտիկներ) ազատվեցին բանտերից: Հրապարակվեց մի դեկրետ, վորը ձեռնարկատերերին պարտավորեցնում



եր հետ ընդունել «սև յերկամյակի» տարիներին քաղաքական պատճառներով հեռացված բոլոր բանվորներին ու ծառայողներին և նրանց յերեքից մինչև վեց ամսվա աշխատավարձի չափով դրամական կոմպենսացիա տալ: Կատալոնիայի ինքնավարությունը նորից վերականգնվեց: Մայիսի 28-ին մի օրենք ընդունվեց, վորը չեղյալ եր համարում ագրարային ռեֆորմի նկատմամբ մտցված ֆաշիստական ուղղումները: Ձախ հանրապետական կառավարությունն արդեն հող տվեց հարյուր հազար գյուղացիների: Միաժամանակ վերականգնվեց Լերուս—Խիլ Ռոբլեսի ռեժիմի ժամանակ վերացված՝ հանրապետության առաջին շըրջանի սոցիալական օրենսդրությունը և վերականգնվեցին դեմոկրատական ազատությունները: Մի շարք ֆաշիստական կազմակերպություններ, ամենից առաջ տեռորիստական «Իսպանական ֆալանգը»—ցըրված հայտարարվեցին: 5-ից մինչև 6 հազար ֆաշիստներ բանտ նետվեցին: Սկսվեց

վոստիկանության—ժանդարմերիայի և բանակի զտումը ֆաշիստական-միապետական տարրերից:

Նոր ռեժիմի պայմաններում սկսվեց քաղաքային պրոլետարիատի ու գյուղացիության ակտիվության հսկայական աճումը: Տեղի ունեցած մի շարք ընդհանուր գործադուլները ձեռնարկատերերին հարկադրեցին վերականգնել «սև յերկամյակի» ժամանակ կտրված աշխատավարձը: Մի շարք տեղերում տեղի ունեցած լոկաուտի փորձերը պատճառ դարձան, որ մի շարք ձեռնարկություններ անցնեն բանվորների ձեռքը (օրինակ, Մադրիդի տրամվայը, Կադիքսի վերֆերը): Գյուղում բուռն շարժում սկսվեց կալվածատերերի հողերն անմիջապես գրավելու և վարելու համար:

## ՌԱԶՄԱ-ՖԱՇԻՍՏԱԿԱՆ ԽՌՈՎՈՒԹՅՈՒՆԸ

Բնական է, որ այս դրությունն ամենախոր յերկյուղ էր ներշնչում հողատերերին, բանկիրներին, կապիտալիստներին, ար-



դյունաբերողներին, պատճառ դառնալով, որ նրանք մտնեն ֆաշիզմի դրոշակի շուրջը: Փետրվարի 16-ի ընտրություններին ռեակցիան ու ֆաշիզմը պարտություն կրեցին, սակայն նրանք չպարտվեցին: Բնորոշ է, որ ընտրությունների ժամանակ ամենից ավելի շատ կորուստներ ունեցան կենտրոնականները (Լերուսի ռադիկալ կուսակցությունը) և ամենից քիչ Խիլ Ռոբլեսի ՍԵԴԱ-ն: Պահպանելով տնտեսական ուժեղ դիրքեր, դեռևս բավականին վստահելի դիրքեր պետական-վարչական և առանձնապես զինվորական ապարատում, հենվելով յեկեղեցու, դեռևս ամենևին էլ չխախտված գաղափարական հզորության վրա (առանձնապես գյուղում), ֆաշիզմի դրոշի տակ յելույթ ունեցող կալվածատերերն ու ֆինանսական կապիտալը դեռևս քաղաքական լուրջ ուժ և վտանգավոր սպառնալիք էին ներկայացնում: Արդեն ընտրություններին անմիջականորեն հաջորդող շրջանում պարզ էր, որ ֆաշիզմը միայն ժամանա-

կավորապես է նահանջել նոր դիրքերը և ցանկանում է մոբիլիզացիայի յենթարկել բոլոր հնարավոր ուժերը, ձախ հանրապետական կառավարությունը զենքով տապալելու համար:

Ընտրություններից ամիջապես հետո ռեակցիայի ուժերն սկզբում զգուշաբար, հետո ավելի ու ավելի բացահայտ ձևով յուրացնում են կառավարության ձեռնարկումների սաբոտաժի և մասսաների նկատմամբ պրովոկացիայի տակտիկան:

«Սև յերկամյակի» ռեժիմը կարողացավ շատ խիստ վատացնել յերկրի էկոնոմիկայի առանց այն էլ ծանր դրությունը: Օրինակ, տեքստիլ արդյունաբերության արտադրանքը 1931 թվից սկսած կրճատվեց 40 տոկոսով: Հանքերում կուտակվեց 300 հազար տոնն քարածուխ, որին սպառում չէր գտնում: Պետական բյուջեի դեֆիցիտը 1932 թվի 410 միլիոն պեզետից 1934 թվին աճեց մինչև 506 միլիոնի: Ռեակցիան այժմ փորձում է Խիլ Ռոբլեսի ռեժիմի տնտեսավա-



րության այդ հետևանքները վերագրել ժողովրդական ճակատի հաղթանակին: Արշավանք է սկսվում պեզետի դեմ, իսպանական վալյուտան քալքայելու նպատակով: Սկսում են կապիտալները վերցնել բանկերից և փոխադրել արտասահման: Ձեռնարկատերերն սպառնում են մասսայաբար փակել ձեռնարկությունները: Կալվածատերերն ընդհատում են գյուղատնտեսական աշխատանքները, ծանուցելով, որ աշնանը նրանք չեն ցանի իրենց հողերը:

Ֆաշիստական բանդաները, մասնավորապես «Իսպանական ֆալանգը», որն անլեգալ կերպով շարունակում էր իր գոյությունը, հաճախակի յեն դարձնում ժողովրդական ճակատի գործիչների դեմ կատարած ավազակային յելույթները, բանվորական միտինգների և ցույցերի վրա սարքված պրովոկացիոն հարձակումները: Գյուղում տեղական ադմինիստրացիայի և ժանդարմերիայի ռեակցիոն տարրերը գնդակահարում են հեղափոխական գյուղացիներին: Ֆաշիստա-

կան կուսակցությունները, փաստորեն թողնելով կորտեսները (պառլամենտը), գնալով ավելի ու ավելի բացահայտ կերպով սպառնում են զինված հեղաշրջմամբ:

Հունիսի 16-ին կորտեսների նիստի ժամանակ, կոմունիստական պատգամավորուհի Դոլորես Իբարրուրին նախազգուշացնում էր, որ Նավարայի (հյուսիսային Իսպանիա) հյուսիսային սահմանով ֆաշիստական կազմակերպությունները զենք և հանդերձանք են ներմուծում: Մի շարք տեղերում բռնկվում են խռովություն, ի միջի այլոց, անհաջող փորձեր՝ նահանգների կայազորների սպայության կողմից:

Այդ լարված իրադրության մեջ հուլիսի 18-ին սկսվում է լայնորեն ճյուղավորված ռազմա-ֆաշիստական խռովությունը, որը միաժամանակ ընդգրկում է Իսպանական Մարոկկոն, Հարավային Իսպանիան, ինչպես նաև երկրի հյուսիսում գտնված կարևորագույն կայազորները: Խռովության փորձեր են կատարվում նաև Մադրիդի,



Բարսելոնի և Վալենսիայի կայազորների մի մասի կողմից: Այդ փորձերն արագությամբ անհաջողության են մատնվում, սակայն հյուսիսում և հարավում խռովարարներին հաջողվում է ուժեղ դիրքեր գրավել, և կռիվն ընդունում է արյունահեղ ու համառ մարտերի ձգձգվող բնույթ՝ մոտենալով քաղաքացիական պատերազմի մասշտաբներին:

## ՊԱՏԵՐԱԶՄԻ ՀՐՁԻԳՆԵՐԸ

Ի՞նչ ուժերի վրա են հենվում խռովարարները:

Անկասկած, նրանք այնքան էլ լայն սոցիալական բազա չունեն:

Հյուսիսում նրանց օգնում են կուլակային վերնաշերտը և նրանց ազդեցության տակ ընկած Նավարայի, այդ խորապես հետամնաց լեռնային նահանգի, գյուղացիների մի մասը, որտեղ յեկեղեցին և վանական միաբանությունները առանձնապես մեծ ազդեցություն ունեն համարյա ամբողջությամբ խավար մնացած մասսաների վրա:

Երկրի մնացած մասերում խռովարար գեներալներն, ըստ յերևույթին, չեն կարող նկատի ունենալ գյուղացիական այնքան եվ զգալի մասսաների ոգնությունը:

Խռովարարների կողմն են, անկասկած, կալվածատերերն ու ֆինանսական կապիտալը: Տեղեկություն ստացվեց, վոր խռովարարների ֆինանսական մատակարարման գլխավոր կազմակերպիչը հայտնի բանկիր Խուան Մարչն է, վորը միլիոններ է շահել սպեկուլյացիայով, ռազմական մատակարարումներով, մաքսանենգությամբ և ուրիշ մութ գործերով: Անկասկած, խռովության հաջողությամբ շահագրգռված են նաև արտասահմանյան ֆինանսական կապիտալի այն առանձին խմբավորումները, վորոնք կոնցեսիաներ ունեն Իսպանիայում և, ինչպես մենք արդեն մատնանշեցինք, վերահսկում են իսպանական համարյա ամբողջ ծանր արդյունաբերությունը: Ֆրանսական թերթերը հաղորդեցին, որինակ, վոր անգլիական պղնձի կոնցերնը, վորը տիրում



է Ռիո-Տինտոյի հանքերին (Հարավային Իսպանիա), վորոշակիորեն ոգնում է խռովարարներին: Ֆրանսական բուրժուազիայի մի մասը անկախ իսպանական ձեռնարկություններում ունեցած իր նյութական շահագրգռվածությունից, կվողջուներ խռովարարների հաջողությունը, քանի վոր նա վախենում է, վոր նրանց պարտությունը կուժեղացնի ժողովրդական ճակատի դիրքերը նաև Ֆրանսիայում:

Իտալական և առանձնապես գերմանական ֆաշիզմը, ինչպես մերկացնում է արտասահմանյան մամուլը, մասնակցել է խռովության նախապատրաստմանը: Այժմ նա ակտիվ կերպով ոգնում է իսպանական խռովարար գեներալներին: Նա ուղղակիորեն միջամտում է Իսպանիայում տեղի ունեցող դեպքերին՝ զենք և ինքնաթիռներ ուղարկելով խռովարարներին, իսպանական ջրերն ուղղելով իր ռազմանավերը (համարյա ամբողջ գերմանական ռազմական նավատորմն այժմ կենտրոնացված է Իսպանիայի ափե-

րին), որոնք գործնականորեն մասնակցում են ռազմական գործողություններին, ռմբակոծում են Իսպանական Մարոկկոյից խռովարարների զորքերը Հարավային Իսպանիա փոխադրելուն։ Հիտլերյան Գերմանիան և ֆաշիստական Իտալիան ձգտում են ոչ միայն թույլ չտալ, որ պարտվեն իսպանական խռովարար գեներալները։ Նրանք ցանկանում են Իսպանիայում տեղի ունեցող դեպքերն օգտագործել, որպեսզի կոնցեսիաներ ձեռք բերեն կամ այլ ձևով ապահովեն իրենց դիրքերի ամրացումն Իսպանական Մարոկկոյում և Բալեարյան կղզիներում և այդպիսով Միջերկրական ծովի ավազանի արևմտյան մասը վերաբաժանել իրենց օգտին։

Վերաբաժանման այդ ծրագրերն անմիջական սպառնալիք են անգլիական իմպերիալիզմի կենսական շահերին և սպառնալիքի տակ են դնում նրա Ջիբրալթարյան հենակետը, Արևելքի հետ Անգլիայի կապերի ընդհատման մշտական վտանգ ստեղ-



ծելով (ինչպես մենք մատնանշել ենք, որ հատկապես այդ վտանգից խուսափելու համար էր անգլիական իմպերիալիզմը սնդում Ջիբրալթարի նեղուցի հարավային ափը տալ թույլ Իսպանիային)։ Պիրենեյան թերակղզում Հիտլերի ագրեսցության հաստատումը մեծագույն սպառնալիք կլինի նաև Ֆրանսիայի համար, նրան հյուսիսից (Գերմանիա), արևելքից (Իտալիա) և հարավից (Իսպանիա—յեթե այնտեղ հաղթանակեն խռովարարները) ֆաշիստական պետությունների աքցանով բռնելու վտանգ ստեղծելով։ Ահա թե ինչու Իսպանիայի նկատմամբ գերմանո-իտալական ինտերվենտների պլանները հեշտությամբ կարող են արագացնել իմպերիալիստական ամենասուր հակասությունների զինված պոռթկումը։

Ա. ԲՈՐԵՋՈՎՍԿԻ

# ԿԱՌԱՎԱՐՈՒԹՅԱՆ ՅԵՎ ԽՌՈՎԱՐԱՐՆԵՐԻ ԶԻՆՎԱԾ ՈՒԺԵՐՆ ԻՍՊԱՆԻԱՅՈՒՄ

Ավելի ու ավելի համառ բնույթ է ստանում իսպանական ժողովրդի զինված կռիվը գազանացած ֆաշիզմի դեմ: Ֆաշիստ խռովարարների սկսած ռազմական գործողությունները յերկիրը բաժանում են յերկու անհավասար բանակի: Կենաց և մահու կռիվ է մղվում: Իրենց հարազատ գործի համար մղվող կռվի մեջ օր-օրին ներգրավվում են աշխատավոր ժողովրդի միշտ նորանոր շերտեր, սակայն միաժամանակ տեղի յե ունենում նաև ներքին ու արտաքին հակահեղափոխության ուժերի կոնսոլիդացիան, իսպանական ժողովրդի բոլոր վոխերիմ թշնամիների կոնսոլիդացիան:



Ֆաշիստական խռովության առաջին շրջանում ինչպե՞ս եր յերկու կռվող բանակների ուժերի փոխհարաբերությունը:

Խռովության սկզբին իսպանական բանակը բաղկացած եր 35 հետևակային գնդից, 8 գումարտակ լեռնային հրաձիգներից, 6 գնդացրային գումարտակներից, 10 հեծյալ գնդից, զրահապատների մեկ դիվիզիոնից, թեթև հրետանու 16 գնդից, 1 հեծյալ հրետանու գնդից, ծանր հրետանու 4 գնդից, զենիթային հրետանու 2 դիվիզիոնից, 3 խառն հրետանու դիվիզիոնից, 2 տանկային գնդից և զանազան մասնագիտական զորամասերից: Իսպանական ավիացիան ուներ 500 ինքնաթիռ: Բանակի ընդհանուր թիվը հասնում եր 150-ից 170 հազար հոգու:

Հայտնի յե, վոր բանակի մեծ մասն անցավ ֆաշիզմի կողմը:

Հակահեղափոխությունը խռովության ոջախը պատրաստելով Իսպանական Մարոկկոյում, իր համար ապահովեց այնտեղ

գտնված զորքերը, թվով մինչև 50 հազար հոգի, վորոնք կազմում եյին ամբողջ իսպանական բանակի մեկ յերրորդ մասը: Այդ զորքերի մեջ մտնում եյին ոտարերկրյա լեգիոնի 12 հազար զինվորների և տեղական զորքի մոտ 25 հազար զինվորներ: Ոտարերկրյա լեգիոնի զորամասերը հայտնի յեն 1934 թվին Աստուրիայի բանվորների հետ կատարած արյունալի դատաստանով: Նրանք կազմված են լավ վարժատրված կամավորներից, վորոնք հավաքագրվում են բոլոր ազգությունների առավելապես մութ և քրեական տարրերից:

Իսպանական Մարոկկոյից տարածվելով Իսպանիայի հարավում, խռովարար ուժերին հաջողվեց Անդալուզիայում իրենց միացնել յերկրորդ զինվորական շրջանի զորամասերը, վորոնք բաղկացած եյին 10–12 հետևակ գումարտակներից, թեթև հրետանու 8–10 մարտկոցից, մեկ հեծյալ գնդից: Այդ զորամասերն ընդհանուր առմամբ հաշվում եյին 8 հազար հոգու:



Յերկրի հյուսիսում խռովարարները գրավեցին բավականին ընդարձակ ռայոն, վորը բաղկացած եր Լեոն, Հին Կաստիլիա, Նավարա նահանգներից և Արագոն նահանգի արևմտյան մասից: Յեթե յերկրի հարավային ռայոնները, վորոնք պրոլետարական զգալի շերտ և հեղափոխականորեն տրամադրված գյուղացիություն ունեն, սոցիալական կայուն բազա չեն հանդիսանում խռովարարների համար, ապա հյուսիսային ռայոնում դրությունը մի քիչ այլ կերպ է: Այնտեղ արդյունաբերությունը թույլ է զարգացած և բնակչության մեջ պրոլետարական շերտը մեծ չէ: Այնտեղ կա փոքր կալվածքներ ունեցող հետադիմական ազնվականության մեծ խումբ: Նավարայի նահանգում լեռնականները, վորոնք գտնվում են կաթոլիկ յեկեղեցու և գյուղի կուլակային մասի ազդեցության տակ, բավականին ամուր բազա յեն խռովության համար:

Յերկրի հյուսիսում Ֆաշիզմի կողմն անցան 5-րդ, 6-րդ, 7-րդ և մասամբ 8-րդ

գինվորական շրջանների զորամասերը, վորոնք բաղկացած են 30 հետևակային գումարտակներից, հրետանու 70 մարտկոցից, 1 տանկային գնդից, 1 զենիթային դիվիզիոնից, 3 սակրավորական գումարտակից, 4 հեծագնդից, 30-40 ինքնաթիռներից: Այդ զորամասերն ընդհանուր առմամբ հասնում են 30 հազար հոգու: Դրանց պետք է ավելացնել նավարական «կարլիստների» (միապետականների) զինված ջոկատները, վորոնց թիվը հասնում է մոտ 5000-ի: 1-ին, 2-րդ և 4-րդ զինվորական շրջաններում, այսինքն Մադրիդի, Վալենսիայի և Կատալոնիայի ռայոններում խռովություն առաջ բերելու փորձերը հաջողություն չունեցան: Այդ տեղերում խռովությունն արագությամբ լիկվիդացիայի յենթարկվեց կառավարությանը հավատարիմ մնացած զորքի և բանվորական ջոկատների կողմից: Այդ ռայոնները, առանձնապես Մադրիդի և Բարսելոնի ռայոնները, սոցիալական ամուր բազա յեն ժողովրդական ճակատի համար:



Առաջին, յերրորդ և չորրորդ զինվորական շրջաններում կառավարության կողմն անցան մոտ 30 գումարտակ հետևակ, 2 հեծյալ գունդ, 1 տանկային գունդ, 1 ծանր հրետանու գունդ, հրետանու 60 մարտկոց, 1 յերկաթուղային գունդ, 3 սակրավորական գումարտակ, 2 ավիացիոն էսկադրիլիա: Այդ զորամասերը, ընդհանուր առմամբ, ունեյին մոտ 30 հազար մարտիկ: Դրանց պետք է ավելացնել ժողովրդի կողմն անցած քաղաքացիական գվարդիան (ժանդարմերիան)— մոտ 10.000 հոգի:

Խռովության առաջին իսկ որերից իսպանական բանակը բաժանվեց հետևյալ կերպ·

Կառավարությունն ուներ մոտ 30 գումարտակ հետևակ, 4 հեծյալ գունդ, 1 տանկային գունդ, հրետանու մոտ 60 մարտկոց, մոտ 250 ինքնաթիռ: Կառավարությանը հավատարիմ մնացած զորամասերի ընդհանուր թիվը հասնում եր մինչև 40 հազար մարտիկի:

Ֆաշիզմն ուներ մոտ 55 գումարտակ հե-

տևակ, տասներկույս լեգիոնի մոտ 10 հազար զինվոր, 5 հեծյալ գունդ, 1 տանկային գունդ, հրետանու 100 մարտկոց, 100 ինքնաթիռ: Այդ զորքերի թիվն ընդհանուր առմամբ հասնում էր մինչև 100–120 հազար հոգու:

Իսպանական ռեգուլյար բանակը Եվրոպայի ամենահետամնաց բանակներից մեկն էր, որին անծանոթ է համաշխարհային պատերազմի փորձը: Եվրոպական մյուս բանակների համեմատությամբ նա տեխնիկապես բավականաչափ հագեցված չէ:

Այնուամենայնիվ, խռովարարների կողմն անցած զինված ուժերը ռեալ վտանգ էին կառավարության համար: Նրանք համարյա ամբողջությամբ պահպանել են իրենց սպայական կազմը, այն ժամանակ, երբ կառավարությանը հավատարիմ մնացած զորամասերում սպայության մոտ 80 տոկոսը դավաճանություն է արել և միացել է խռովարարներին:

Եթե ցամաքային բանակի մեծ մասն ան-



ցել է ռեակցիայի կողմը, ապա ծովային նավատորմիղը հիմնականում մնացել է կառավարության կողմը: Խռովարարներն ունեն միայն մի քանի ռազմանավեր, այդ թվում «Եսպանիա» գծանավը և 3 ռազմանավ—«Ալմիրանտե-Սերվերա», «Կանարիաս» և «Բալեարես»: Սակայն կառավարական նավատորմիղը զրկվել է հրամանատարական կազմից ե՛լ ավելի մեծ չափով, քան կառավարական զորքերը: Նավատորմի սպաները, համարյա ամբողջությամբ, անցել են խռովարարների կողմը:

Իսպանիայի ռազմական արդյունաբերությունը չի կենտրոնացած մի ռայոնում: Հիմնական ռազմագործարանները հետևյալ կերպ են բաժանված՝

Կառավարության ձեռքում են Տոլեդոյի փամփուշտի գործարանը, Մուրսիայի վառոդի գործարանը և Տրուբիի թնդանոթի գործարանը:

Խռովարարների տրամադրության տակ են՝ Ովիեդոյի հրացանի գործարանը, Գրե-

Նաղայի վառոդի գործարանը և Սևիլիայի պիրոտեխնիկական գործարանը:

Ինչպես յերևում է, յերկու կռվող բանակների զինված ուժերի սկզբնական փոխհարաբերությունն Իսպանիայում կառավարության ոգտին չէր: Կառավարության առաջ կանգնեց բանվորներին զինելու, հանրապետության համար իսկական զինված հենարան ստեղծելու խնդիրը:

Ձեռնարկվեց ժողովրդական միլիցիայի ստեղծմանը, վորը շուտով վերածվեց կառավարության հիմնական զինված ուժին: Ժողովրդական միլիցիայի ջոկատները վճռական դեր խաղացին Մադրիդում, Բարսելոնում և յերկրի մյուս պրոլետարական կենտրոններում տեղի ունեցած ֆաշիստական խռովությունը լիկվիդացիայի յենթարկելու գործում, կենտրոններ, վորոնք դարձան ժողովրդի ազատագրական պայքարի ոջախները: Ժողովրդական միլիցիային միանում են գյուղացիական բազմաթիվ ջոկատները, վորոնք ձեռաց ստանում են



զինվորական պատրաստություն, կամավորները բաժանվում են վաշտերի և գումարտակների, հրամանատարական կազմն է կոմպլեկտավորվում: Ժողովրդական միլիցիայի հրամանատարները նշանակվում են ամենալավագույն և ամենանվիրված հեղափոխական բանվորների թվից: Հազվադեպ չեն և այն դեպքերը, յերբ ժողովրդական միլիցիայի մեջ հրամանատարական պաշտոնների յեն նշանակվում զինվորական մասնագետները, վորոնք գործում են քաղաքական կոմիսարների հսկողության տակ:

Նավատորմում հրամանատարները հիմնականում համընկնում են յենթասպաները, վորոնք հրաշալի կերպով կատարում են իրենց պարտականությունները:

Ժողովրդական միլիցիայի ջոկատները, վոգեշնչված ֆաշիստական ռեակցիայի դեմ տածած ատելությամբ, համառություն, խիզախություն և ինքնազոհություն հրաշքներ են գործում, հաճախ ճակատամարտե-

լով խռովարարների՝ թվով իրենցից գերազանցող և լավ զինված ռեգուլյար զորամասերի դեմ: Այսպես յեղավ, որինակ, Իրունի մոտ. ժողովրդական միլիցիայի ջոկատները յերկար ժամանակ պահպանելով քաղաքի մատույցները, կռվում եյին հողի յուրաքանչյուր թզի համար, յուրաքանչյուր տան համար:

Հանրապետական կառավարության զինված ուժերը համալրվելով ժողովրդական միլիցիայի ջոկատներով, դեռևս ոգոստոսին հասան հարյուր հազար հոգու և դրանով իսկ նրանք իրենց թվով հավասարվեցին հակառակորդի զորքերին: Սակայն դրանք մեծ մասամբ զինվորական գործին նվազ ծանոթ կադրեր են, վորոնք հակառակորդից հետ են մնում նաև իրենց սպառազինմամբ:

Հանրապետական ուժերի մեծագույն թերությունը, վորը պահպանվել եր մինչև վերջերս, դա՝ միասնական ոպերատիվ ղեկավարության բացակայությունն եր: Հա-



ճախ ռազմաճակատի առանձին մասերում կռվում ու գործում եյին միասնական հրամանատարության չենթարկվող ինքնուրույն ջոկատներ, վորոնք իրենց գլխու պաշտպանում եյին իրենց գծամասը: Տարբեր սեկտորներում կային անարխիստների, կոմունիստների, սոցիալիստների և մյուսների առանձին ռազմաճակատներ: Դա փոշիացնում եր ուժերը և միասնական ոպերատիվ ծրագրի բացակայություն առաջ բերում: Վերջին որերի ոպերացիան ցույց ե տալիս, վոր կառավարական զորքերի մեջ բարելավվում ե զինված ուժերի ոպերատիվ ղեկավարությունը:

Խռովարարները կարո՞ղ են հուսալ, վոր իրենց ուժերը կաճեն առանց ինտերվենտների՝ ի դեմս գերմանական–իտալական ֆաշիստների՝ միջամտության:

Մարոքային զինվորների մասսան, վորը խաբելով անցել ե խռովարարների կողմը, չի կարելի լրիվին վստահելի հենարան համարել ֆաշիզմի համար: Հազվադյուտ չեն

խռովարար գեներալների անցումները հանրապետության կողմը: Հայտնի յե, վոր խռովարարների մի շարք զորամասերում զինվորները կռվի յեն գնում ֆաշիստ սպաների կողմից դատաստան տեսնելու սպառնալիքի տակ միայն: Անտեղի չեր, վոր խռովարար գեներալները չնայած իրենց ֆինանսական դժվարին կացության, հարկադրված յեղան ավելացնել զինվորի ռոճիկը մեկ պեսետով, կապրալներինը՝ 2 պեսետով և յենթասպաներինը՝ 3 պեսետով:

Խռովարարների հրամանատարության՝ մոբիլիզացիա կատարելու փորձերն սպասված արդյունքները չտվին, վճռական ընդդիմադրության հանդիպելով ժողովրդական մասսաների կողմից: Խռովարար գեներալները հարկադրված են մեծ կայազորներ պահել իրենց գրաված խոշոր քաղաքներում, վորպեսզի ապահովեն իրենց թիկունքը: Ամերիկյան «Չիկագո-Տրիբուն» թերթի թղթակցի վկայությամբ, «խռովարարների գրաված բոլոր վայրերում, բացի



Նավարայից և Հին Կաստիլիայից, խռովարարները հանդիպում են կամ անտարբեր, կամ թե վորոշակիորեն թշնամական վերաբերմունքի: Խռովարարների բոլոր ուժերի մեկ յերրորդը, յեթե վոչ կեսը, զբաղված և թիկունքը պահպանելու վոստիկանական ֆունկցիաներով: Ճակատներում կենդանի ուժի պակասության պատճառն այն է, վոր խռովությունը ժողովրդականություն չի վայելում գրավված ռայոններում: Խռովարարների թիկունքում տեղի ունեցող պարտիզանական անընդհատ կռիվները հիշեցնում են այն վտանգը, վորին նրանք կենթարկվեն՝ իրենց բոլոր ուժերը դեպի Մադրիդ տանելիս»:

Խռովարարների թիկունքն ապահովված չե նաև Մարոկկոյում: Խռովարարներին հաջողվեց այնտեղից Իսպանիա փոխադրել միայն մոտ 15 հազար հոգի: Մնացած զորքերը նրանք հարկադրված են պահելու տեղում, թշնամորեն տրամադրված արաբական ցեղերին «հանգստացնելու» համար:

Սակայն խռովարարներն ուժեղ օգնություն են ստանում ֆաշիստական Գերմանիայից և ֆաշիստական Իտալիայից։ Գերմանիան և Իտալիան նյութական խոշոր օգնություն են ցույց տալիս իսպանական ռեակցիային։ Խռովարարների բոլոր ուժերի հրամանատար գեներալ Ֆրանկոյի տրամադրության տակ դեռևս օգոստոսին կային մոտ 100 գերմանական ու իտալական ինքնաթիռներ։ Գերմանիայի և Իտալիայի ռեալ օգնությունն իսպանական խռովարարներին շարունակվում է մինչև այսօր էլ, չնայած այդ պետությունները պաշտոնապես միացել են իսպանական գործերին չմիջամտելու համաձայնությանը։ Փորթուգալիան ամբողջությամբ վերածված է ֆաշիստական խռովության ռազմական բազայի։ Գերմանական ռազմա-ծովային նավատորմիղը բացահայտ կերպով օգնում է խռովարարներին—դեսանտներ է հանում իսպանական նավահանգստներում, կազմակերպում է ռազմամթերքի մատակարարումը խռովա-



րարներին և չեզոքացնում է իսպանական կառավարական նավերի գործողությունները։ Իտալական ծովային նավատորմիղն ապահովում է խռովարարների կոմունիկացիան Իսպանական Մարոկկոյի հետ։

Ի հակակշիռ Իսպանիայի ներքին գործերին գերմանական և իտալական ֆաշիզմի անամոթ միջամտությանը աճում ու ամրապնդվում են իսպանական հանրապետության զինված ուժերը։ Առանձին ճակատամասերում առաջացած մասնակի անհաջողությունները, ինչպես և մայրաքաղաքի—Մադրիդի համար առաջացած սպառնալիքը, ամենևին էլ չեն փչացնում կառավարական զորքերի մարտական վճռականությունը, ընդհակառակն հանրապետության համար դժվարին մոմենտներին հանրապետական դրոշների տակ են մտնում բանվոր և գյուղացի կամավորների նոր հազարյակներ։

Հանրապետական կառավարության տնտեսական բազան յերկրի առաջավոր ռայոններն են։ Նրա համար ապահովված է ժո-

գյուղական միլիոնավոր մասսաների օգնությունն ու համակրանքը: Նա արդեն մեծ աշխատանք է կատարել ամուր, մարտունակ բանակ ստեղծելու գործում—իսպանական ժողովրդի իսկական բանակ ստեղծելու գործում, որը կուռ է դարձել իր հեղափոխական կարգապահությամբ և միասնական ղեկավարությամբ:

Իսպանական ժողովուրդը դեռ դժվարին ու համառ պայքար ունի: Սակայն վերջնական ելքի մասին կասկած լինել չի կարող:

(«Պրավդա» № 268, 1936 թիվ)







# ԻՍՊԱՆԻԱ

ՄԱՍՇՏԱԲ

0 — 50 կմ — 100 կմ — 200 կմ — 300 կմ

Պետական սահմաններ

Նահանգների սահմաններ

Երկաթուղի

Ատլանտյան օվկիանոս

ՖՐԱՆՍԻԱ

ՊՈՐՏՈՒԳԱԼԻԱ

Միջերկրական ծով

ԱԼԺԻՐ

ԻՍՊ. ՄԱՐՈԿԿՈ

ՖՐԱՆՍ. ՄԱՐՈԿԿՈ

ԲԱԼԵԱՐՅԱՆ ԿՂԶ.

ՄԱԴՐԻԴ

